


*Գործ՝ Ռ. ՆԱՆՈՒՇՅԱՆԻ*

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**5** ՄԱՅԻՍ 1975

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении**

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1975 թվականի ապրիլի 16-ին տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը։

Պլենումը ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման առթիվ որոշեց ՍՄԿԿ հերթական XXV համագումարի հրավիրման հարցը։

Պլենումը լսեց Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ արտաքին գործերի մինիստր ընկեր Ա. Ա. Գրոմիկոյի զեկուցումը՝ «Միջազգային դրության և Սովետական Միության արտաքին քաղաքականության մասին»։

Այդ հարցի շուրջը մտքերի փոխանակությանը մասնակցեցին՝ Ուկրաինական ՍՍՀ Մինիստրների սովետի նախագահ ընկեր Ա. Պ. Լյաշկոն, Էստոնիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Ի. Գ. Կեբինը... Ղազախական ՍՍՀ Մինիստրների սովետի նախագահ ընկեր Բ. Ա. Աշիմովը, Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Հ. Ա. Ալիևը, Լենինգրադ քաղաքի Ս. Օրջոնիկիձեի անվան բալթիական գործարանի նավահավաքողների բրիգադավար ընկեր Վ. Ա. Սմիռնովը, ՍՍՀՄ գրողների միության վարչության առաջին քարտուղար ընկեր Գ. Մ. Մարկովը։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը քննարկված հարցի վերաբերյալ ընդունեց համապատասխան որոշում։

Պլենումը ընկ. Ա. Ն. Շելեպինին ազատեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամի պարտականություններից՝ իր խնդրանքի կապակցությամբ։

# ՍՄԿԿ ՀԵՐԹԱԿԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՀՐԱՎԻՐՄԱՆ ՄԱՍԻՆ

## ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ 1975 ԹՎԱԿԱՆԻ ԱՊՐԻԼԻ 16-Ի ՈՐՈՇՈՒՄԸ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԵՐԹԱԿԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՀՐԱՎԻՐԵԼ 1976 ԹՎԱԿԱՆԻ ՓԵՏՐՎԱՐԻ 24-ԻՆ։

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԴՐՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

## ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ 1975 ԹՎԱԿԱՆԻ ԱՊՐԻԼԻ 16-Ի ՈՐՈՇՈՒՄԸ

Քննարկելով «Միջազգային դրության և Սովետական Միության արտաքին քաղաքականության մասին» հարցը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը հավանություն է տալիս և լիովին պաշտպանում ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի, Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի գործունեությունը կուսակցության XXIV համագումարի արտաքին քաղաքական կուրսի, համագումարի ընդունած խաղաղության ծրագրի կենսագործման ուղղությամբ:

Պլենումը գոհունակությամբ նշում է, որ իրադարձությունների ընթացքը համոզիչ կերպով հաստատեց արդի միջազգային իրադրության XXIV համագումարի կողմից տրված մարքս-լենինյան վերլուծության և համագումարի առաջ քաշած ՍՄԿԿ-ի միջազգային գործունեության խնդիրների ճշտությունն ու հեռատեսությունը:

Սոցիալիստական արտաքին քաղաքականության ակնառու հաջողությունների հիմքն են կազմում էկոնոմիկայի և պաշտպանունակության բնագավառում Սովետական Միության, սոցիալիստական համագործակցության մյուս երկրների խոշոր նվաճումները, եղբայրական պետությունների ամուր միասնությունը և նրանց գործողությունների համաձայնեցվածությունը, նրանց հետևողականությունն ու սկզբունքայնությունը խաղաղության գործի, ժողովուրդների արմատական շահերի պաշտպանության ասպարեզում:

Այն պայքարը, որ մեր կուսակցությունն ու պետությունը մղում են մյուս սոցիալիստական երկրների, բոլոր դեմոկրատական, խաղաղասեր ուժերի հետ, նպաստեց միջազգային իրադրության առողջացմանը: «Սառը պատերազմի» իմպերիալիստական քաղաքականությունը պարտություն է կրում: Տարբեր սոցիալական կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքների հաստատումը հակադրվում է ագրեսիայի և թելադրանքի քաղաքականությանը, կարևոր խթան է խաղաղասեր ուժերի համախմբման համար, նպաստում է բուրժուական պետությունների ռեալիստորեն մտածող շրջանների մասնակցությանը լարվածության թուլացման պրոցեսին: Այդ պրոցեսին հաստատուն բնույթ տալու համար առանձնահատուկ նշանակություն կունենա ամենամոտ ժամանակներս Եվրոպայի անվտանգության ու համագործակցության խորհրդակցության հաջող ավարտումը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը նշում է, որ ներկայումս անհրաժեշտ օբյեկտիվ պայմաններ կան միջազգային կոնֆլիկտների արդարացի և խաղաղ կարգավորման համար:

Պլենումը ելնում է այն բանից, որ քաղաքական լարվածության թուլացումը պետք է ամրապնդվի ռազմական լարվածության թուլացմամբ և օգտագործվի սպառազինությունների կրճատման ու զինաթափման պայքարի համար, բոլոր երկրների միջազգային-տնտեսական, գիտատեխնիկական և կուլտուրական հարաբերությունների զարգացման համար՝ փոխշահավետ և իրավահավասար հիմքի վրա, առանց որևէ խտրականության և ներքին գործերին միջամտելու:

Դրա հետ մեկտեղ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը նշում է, որ պատերազմի, ռեակցիայի, ագրեսիայի ուժերը չեն հրաժարվում ժամանակակից աշխարհում տեղի ունեցող դրական պրոցեսները խափանելու փորձերից: Նրանք խրախու-



սում են սպառազինությունների մրցավազքը, դեմ են դուրս գալիս գոյություն ունեցող միջազգային ճգնաժամերի վերացմանը, ուրիշ երկրների ներքին գործերին կոպիտ միջամտությամբ փորձում են վիժեցնել ժողովուրդների պայքարը ազատության ու դեմոկրատիայի համար, վարկաբեկել խաղաղ գոյակցության քաղաքականությունը:

ՍՄԿԿ-ն, սովետական պետությունն այսուհետև ևս աչալուրջ կերպով կհետևեն խաղաղության թշնամիների մեքենայություններին, հաստատ ու վճռականորեն կպաշտպանեն սովետական ժողովրդի շահերը, ընդհանուր խաղաղության և ժողովուրդների ազատության շահերը:

Կենտկոմի պլենումը նշում է, որ խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա միջազգային հարաբերությունների վերակառուցման գործում կարևոր դեր խաղացին և կոչված են հետագայում էլ խաղալու տարբեր երկրների քաղաքական ղեկավար գործիչների կանոնավոր հանդիպումները, այդ թվում ամենաբարձր մակարդակով երկկողմ և բազմակողմ բանակցությունները:

Հայրենական մեծ պատերազմում տարած հաղթանակի 30-ամյակը սովետական ժողովուրդը դիմավորում է հիրավի պատմական նվաճումներով՝ կոմունիստական հասարակարգի կառուցման գործում և խաղաղության, դեմոկրատիայի ու ազատության այն իդեալների իրականացման պայքարում, որոնց համար ժողովուրդները կռվել են ֆաշիզմի և միլիտարիզմի դեմ: ՍՄԿԿ-ի լենինյան արտաքին քաղաքականությունը հուսալիորեն է ծառայում խաղաղության և անվտանգության գործին, ագրեսիայի և իմպերիալիզմի դեմ ժողովուրդների պայքարի շահերին: Արտացոլելով սոցիալիզմի էությունը և նրա վեհ նպատակները, այդ քաղաքականությունը նպաստում է ամենալայն մասսաների գիտակցության մեջ ներարկելու նոր հասարակարգի առավելությունների ըմբռնումը, որոնք հատկապես վառ կերպով են ի հայտ գալիս կապիտալիստական երկրներում տեղի ունեցող այժմյան տնտեսական ճգնաժամի և մյուս ցնցումների ֆոնի վրա:

Լենինի կուսակցությունը վերստին հայտարարում է իր անշեղ համերաշխությունը սոցիալական և ազգային ազատագրության մարտիկների հետ: Նա առաջվա պես ամեն ինչ կանի մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա համաշխարհային կոմունիստական շարժման սերտ համախմբման համար:

Կենտրոնական կոմիտեի պլենումը քաղբյուրոյին հանձնարարում է՝ նույնպիսի նպատակասլացությամբ և ակտիվությամբ, ինչպես մինչև օրս, հասնել խաղաղության ծրագրի լիակատար իրականացմանը, վարել ՍՄԿԿ XXIV համագումարի արտաքին քաղաքական կուրսը, որը վայելում է սովետական ժողովրդի միահամուռ պաշտպանությունը:

Նշելով իններորդ հնգամյա պլանի կատարման գործում ձեռք բերած հաջողությունները, պլենումը անհրաժեշտ է համարում կուսակցական կազմակերպությունների, բոլոր բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության ուշադրությունը կենտրոնացնել հնգամյակի վերջին՝ եզրափակիչ տարվա առաջադրանքների կատարման ու գերակատարման վրա, որը թույլ կտա նոր, խոշոր քայլ անել ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում, և էլ ավելի կամրապնդի մեր մեծ խաղաղասեր հայրենիքի միջազգային դիրքերը:

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԵԾ ՍԽՐԱՆՔԸ

## ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՂԹԱՆԱԿԻ 30-ԱՄՅԱԿԻՆ ՆՎԻՐՎԱԾ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ԺՈՂՈՎ ԿՐԵՄԼԻ ՀԱՄԱԳՈՒՄԱՐՆԵՐԻ ՊԱԼԱՏՈՒՄ

Երեք տասնամյակ առաջ ֆաշիզմի դեմ սովետական ժողովրդի տարած հաղթանակով ավարտվեց Հայրենական մեծ պատերազմը։ 1.418 օր տևեց պատմության մեջ մեծագույն ճակատամարտը։ Դա պատերազմ էր սոցիալիստական հայրենիքի ազատության և անկախության համար, համաշխարհային քաղաքակրթության փրկության համար, գալիք արդարացի խաղաղության համար։ Ահա թե ինչու մեծ հաղթանակի 30-ամյակը Սովետական Միության հետ այս օրերին նշում է ամբողջ առաջադեմ մարդկությունը։

Մայիսի 8-ին Կրեմլի համագումարների պալատը առանձնահատուկ տոնական տեսք ուներ։ Պալատի մուտքի մոտ դրոշակաձողերի վրա փողփողում են ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների դրոշակները։ Պալատում այն զորամասերի մարտական փառքով պսակված դրոշներն են, որոնք առավել աչքի են ընկել ճակատամարտերում։ Կողքին՝ 1945 թվականի հունիսին Կարմիր հրապարակում հաղթանակի զորահանդեսին մասնակցած ռազմաճակատների համահավաք գնդերի դրոշներն են։ Այստեղ են նաև այն առաջավոր ձեռնարկությունների դրոշները, որոնք ռազմաճակատին մատակարարել են մարտական տեխնիկա և զինամթերք, հանդերձանք և պարեն։

Կրեմլում, Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի հաղթանակի 30-ամյակին նվիրված հանդիսավոր ժողովի էին հավաքվել պատերազմի և աշխատանքի վետերանները, բոլոր միութենական հանրապետություններից եկած Սովետական Միության հերոսներ, Փառքի երեք շքանշանների ասպետներ, սոցիալիստական աշխատանքի հերոսներ։ Դահլիճում էին աշխատավորության, սովետական բանակի և ռազմա-ծովային նավատորմի ներկայացուցիչները։

Դահլիճում էին հաղթանակի 30-ամյակի տոնակատարությանը մասնակցելու համար ՍՍՀՄ եկած արտասահմանյան պատվիրակությունները։ Այստեղ էին նաև դիվանագիտական ներկայացուցչությունների՝ ՍՍՀՄ-ում հավատարմագրված ղեկավարներ, սովետական և օտարերկրյա թղթակիցներ։ Բեմի կենտրոնում Վ. Ի. Լենինի կիսանդրին է։ «1945» և «1975» թվերը հիշեցնում են պատերազմից հետո սովետական ժողովրդի անցած խաղաղ երեսնամյակը։ Բեմի խորքում Հաղթանակի շքանշանի պատկերն է։

Ժամը 15-ն է։ Ներկաները բուռն, երկարատև ծափահարություններով,



հոտնկայս են դիմավորում ընկերներ Լ. Ի. Բրեժնևին, Յու. Վ. Անդրոպովին, Ա. Ա. Գրեչկոյին, Վ. Վ. Գրիշինին, Ա. Ա. Գրոմիկոյին, Ա. Պ. Կիրիլենկոյին, Ա. Ն. Կոսիգինին, Ֆ. Դ. Կուլակովին, Ա. Յա. Պելշեին, Ն. Վ. Պոդգոռնուն, Դ. Ս. Պոլյանսկուն, Մ. Ա. Սուսլովին, Պ. Ն. Դեմիչևին, Բ. Ն. Պոնոմարյովին, Մ. Ս. Սոլոմենցևին, Վ. Ի. Դոլգիխին, Ի. Վ. Կապիտոնովին, Կ. Ֆ. Կատուշևին։

Նրանց հետ նախագահությունում էին սոցիալիստական երկրների և հակահիտլերյան կոալիցիայի երկրների պատվիրակությունների ղեկավարները, սովետական նշանավոր զորապետներ, պատերազմի վետերաններ, աշխատանքի առաջավորներ։

Հանդիսավոր ժողովը բաց է անում ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, կուսակցության Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար Վ. Վ. Գրիշինը։

Հնչում է Սովետական Միության պետական հիմնը։

Զինվորական քայլերգի հնչյունների ներքո դահլիճ է բերվում հաղթանակի դրոշը, որը 1945 թվականի մայիսին կանգնեցվել էր տապալված ռայխստագի վրա։ Դահլիճը հանդիսավորությամբ է դիմավորում դրոշը։ Գվարդիականների պատվո շքախմբի և ՍՍՀՄ զինված ուժերի երեք զորատեսակների դրոշների ուղեկցությամբ հաղթանակի դրոշը բերում են Սովետական Միության հերոսներ Ս. Ա. Նեուստրոևը, Մ. Վ. Կանտարիան և Մ. Ա. Եգորովը։

Ձայնը տրվում է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին։

Հանդիսավոր ժողովի մասնակիցները հոտնկայս և երկարատև օվացիայով դիմավորում են նրան։

## ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

Թանկագին հայրենակիցնե՛ր։

Թանկագին ճակատայիննե՛ր։

Հարգելի արտասահմանյան հյուրե՛ր։

Այս հանդիսավոր օրերին յուրաքանչյուր սովետական մարդ, յուրաքանչյուր ընտանիք, մեր ամբողջ ժողովուրդն ապրում են 1945 թվականի անմոռանալի մայիսի վերհուշով։ Մենք ասես նորից վերապրում ենք այն մեծ խանդավառությունը, որ այն ժամանակ զգում էր ժողովուրդը, որը երկարատև և ահավոր պատերազմից հետո ճաշակեց դժվարությամբ նվաճված խաղաղության երջանկությունը։

Մեզ պատերազմ պետք չէր։ Բայց երբ այն սկսվեց, սովետական ժողովուրդը խիզախորեն մահացու գոտեմարտի ելավ ագրեսորների դեմ։

Հիտլերականները մեր դեմ շարժեցին մի հրեշավոր ռազմական մեքենա։ Նրանք Սովետական Միության վրա նետվեցին առանձնահատուկ դաժանությամբ, որը ո՛չ չափ ունի, ո՛չ անուն։ Գրեթե չորս տարի շարունակ չէր լռում իրենց կատաղությամբ չտեսնված ճակատամարտերի որոտը, որոնց երկու կողմերից մասնակցում էին միլիոնավոր զինվորներ։

Սովետական զենքին անթառամ փառք բերեցին զավթիչների բանակների ջախջախումը Մոսկվայի մոտ, Լենինգրադի պաշտպանությունը, Ստալինգրադյան հերոսական էպոպեան, Կովկասի ճակատամարտը, Կուրսկ-Օրյոլյան աղեղում մղված վիթխարի գոտեմարտը, Կորսուն-Շևչենկովյան գործողությունը, Բեռլինի հաղթական գրոհը և ուրիշ շատ խոշորագույն գործողություններ,

որոնք ընդմիշտ կմնան պատերազմների պատմության մեջ։

Անցնելով ծանրագույն փորձություններով, սովետական մարդիկ պաշտպանեցին հայրենիքի պատիվն ու անկախությունը, պաշտպանեցին Հոկտեմբերի նվաճումները, այն գործը, որը մեզ պատգամել է Վլադիմիր Իլյիչ Լենինը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Սովետական ժողովրդի հերոսական պայքարն արմատապես փոխեց երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքը։ Նրա ճակատամարտերը ծավալվեցին մի հսկայական տարածքում՝ Ատլանտյան օվկիանոսից մինչև Խաղաղ օվկիանոս, Գրենլանդիայի սառույցներից մինչև Աֆրիկայի անապատները, սակայն պատերազմական գործողությունների գլխավոր թատերաբեմը դարձավ սովետա-գերմանական ռազմաճակատը։ Ըստ էության, այստեղ էր վճռվում ոչ միայն սովետական ժողովրդի բախտը, այլև ամբողջ մարդկության բախտը։

Այսօրվա տոնը ֆաշիզմի դեմ մղված մեծ ճակատամարտի բոլոր մասնակիցների տոնն է։ (Ծափահարություններ)։

Դրա ակնառու արտահայտությունն է այստեղ, մեր հանդիսավոր ժողովում, շատ երկրների բազմաթիվ կուսակցական, պետական, զինվորական և հասարակական պատվիրակությունների ներկայությունը։ Սովետական մարդիկ ի սրտե ողջունում են իրենց արտասահմանյան հյուրերին, որոնք եկել են մեզ հետ բաժանելու մեծ, համաժողովրդական տոնահանդեսի հուզմունքն ու ուրախությունը։ (Երկարատև ծափահարություններ)։

Մենք ջերմորեն ողջունում ենք այս դահլիճում գտնվող եղբայրական սոցիալիստական երկրների՝ Բուլղարիայի Ժողովրդական Հանրապետության (ծափահարություններ), Հունգարական Ժողովրդական Հանրապետության (ծափահարություններ), Վիետնամի Դեմոկրատական Հանրապետության (ծափահարություններ), Գերմանական Դեմոկրատական Հանրապետության (ծափահարություններ), Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Հանրապետության (ծափահարություններ), Կուբայի Հանրապետության (ծափահարություններ), Մոնղոլական Ժողովրդական Հանրապետության (ծափահարություններ), Լեհական Ժողովրդական Հանրապետության (ծափահարություններ), Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետության (ծափահարություններ), Չեխոսլովակիայի Սոցիալիստական Հանրապետության (ծափահարություններ), Հարավսլավիայի Սոցիալիստական Ֆեդերատիվ Հանրապետության (ծափահարություններ) պատվիրակություններին։

Մենք ողջունում ենք հակահիտլերյան կոալիցիայի երկրներից՝ Մեծ Բրիտանիայից (ծափահարություններ), Ամերիկայի Միացյալ Նահանգներից (ծափահարություններ) և Ֆրանսիայից (ծափահարություններ) եկած հարգելի հյուրերին։ Սովետական մարդիկ ուրախ են, որ այսօր իրենց մոտ տեսնում են հիտլերյան ագրեսորների և ստրկացնողների դեմ մղված կռվի մարտական մեր զինակիցներին։ (Ծափահարություններ)։

Կոմունիստների կողմից գլխավորված՝ Հարավսլավիայի ժողովրդական-ազատագրական բանակի քաջարի պայքարը, Լեհաստանի ու Չեխոսլովակիայի հայրենասերների կողմից կազմավորված բանակների և միավորումների սխրագործությունները, Սլովակիայում, Ռումինիայում, Բուլղարիայում տեղի ունեցած ժողովրդական ապստամբությունները, ալբանական ժողովրդի ազատագրական կռիվը, Ֆրանսիայում, Իտալիայում և այլ երկրներում ծավալված



դիմադրության շարժումը, պարտիզանական ջոկատների գործողությունները, հակառակորդի ճամբարում հակաֆաշիստական ընդհատակի պայքարը՝ այս ամենը վերջին հաշվով միաձուլվեց սովետական ժողովրդի պայքարի հետ՝ վերածվելով մի հուժկու հոսանքի, որը Եվրոպայի քարտեզից սրբեց-տարավ դարչնագույն աղտեղությունը։ (Երկարատև ծափահարություններ)։

Ֆաշիզմի ջախջախումը խոր հետք թողեց բազում ժողովուրդների կյանքում, փոխեց աշխարհի դեմքը։

Տասնյակ երկրներ ազատագրվեցին ֆաշիստական լծից, վերականգնեցին իրենց անկախությունը։

Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Հարավսլավիայի, Բուլղարիայի և Հունգարիայի, Ռումինիայի և Ալբանիայի, Գերմանական Դեմոկրատական Հանրապետության ժողովուրդները, Չինաստանի, Վիետնամի և Հյուսիսային Կորեայի ժողովուրդները հնարավորություն ստացան ընտրելու սոցիալիստական զարգացման ուղին։ Առաջ եկավ համաշխարհային սոցիալիստական սիստեմը։ Միջազգային կյանքը սկսեց զարգանալ նոր օրենքներով։

Առաջադեմ դեմոկրատական, խաղաղասեր ուժերի դիրքերն ամրապնդվեցին ամբողջ աշխարհում։ Ամենուրեք ուժեղացան կոմունիստական կուսակցությունների հեղինակությունն ու քաղաքական ազդեցությունը։ Դեմոկրատիայի և աշխատավորության նյութական դրության բարելավման համար մղվող պայքարում նոր հաջողությունների հասավ բանվորական շարժումը։ Հետպատերազմյան արդեն առաջին տարիներին ուժեղացավ գաղութային կայսրությունների տրոհման պրոցեսը, որն ավարտվեց գաղութատիրության փլուզմամբ։

XX դարի ընթացքում մեր երկիրը երկու անգամ կանգնել է աշխարհի դիմագծի մեջ կատարված խոշորագույն փոփոխությունների ակունքների մոտ։

Այդպես էր 1917 թվականին, երբ Հոկտեմբերի հաղթանակն ազդարարեց մարդկության մուտքը պատմական նոր դարաշրջան։ Այդպես էր 1945 թվականին, երբ ֆաշիզմի ջախջախումը, որի մեջ վճռական դեր խաղաց Սովետական Միությունը, բարձրացրեց սոցիալ-քաղաքական փոփոխությունների մի հզոր ալիք, որն անցավ ամբողջ մոլորակով, ամրապնդեց խաղաղության ուժերն ամբողջ աշխարհում։

Ուստի, աշխարհի առջև ավելի վիթխարիորեն, ավելի վեհորեն է հառնում Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի կատարած սխրանքը։ Այդ սխրանքը մտել է պատմության մեջ և երբեք չի մոռացվի։ (Ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Հայրենական մեծ պատերազմի ճակատամարտերում նվաճված հաղթանակը մեր հերոսական բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մեր մտավորականության հաղթանակն է, ամբողջ բազմազգ սովետական ժողովրդի հաղթանակը։ Դա փառապանծ սովետական բանակի, հեղափոխության կողմից ստեղծված, կուսակցության կողմից դաստիարակված, ժողովրդի հետ անխզելիորեն կապված բանակի հաղթանակն է։ Դա սովետական ռազմական գիտության, բոլոր զորատեսակների մարտական վարպետության, ժողովրդի ծոցից ելած սովետական զորավարների արվեստի հաղթանակն է։ (Երկարատև ծափահարություններ)։

Սովետական զինվորներին, սպաներին և գեներալներին շատ բան վիճակվեց պատերազմի ճանապարհներին։ Հոգեմաշ նահանջ։ Անընդհատ, կա-

տաղի մարտեր: Օրեր, ամիսներ ու տարիներ մահն աչքի առջև: Տևական, հյուծիչ տեղաշարժեր՝ ձմռան սառնամանիքներին և ամառվա տապին, աշնանային չդադարող անձրևների տակ և գարնանային ուղեխափանքի ժամանակ: Երբ հիմա, երեք տասնամյակ անց, վերհիշում ես, թե ինչ էր վիճակվել մեր բանակի ռազմիկներին, հրամանատարներին, քաղաշխատողներին, երբեմն նույնիսկ չես հավատում, որ այդ ամենը եղել է, որ այդ ամենին կարելի էր դիմանալ...

Դիմացանք: Ամեն ինչին դիմացանք (բուռն, երկարատև ծափահարություններ), ամեն դժվարություն տարանք ու հաղթեցինք, ջախջախեցինք ֆաշիստական ագրեսորին: (Բուռն, երկարատև ծափահարություններ):

Մենք բոլորս, ովքեր այդ տարիներին քայլում էինք գնդակների, արկերի և ռումբերի տարափի տակ, տոգորված էինք մի մտքով, որ պատրաստ ենք նվիրել մեր կյանքը, միայն թե ապրի մեր սիրելի հայրենիքը, ազատ ու երջանիկ լինի մեր ժողովուրդը: (Երկարատև ծափահարություններ):

Ծանր էր հաղթանակի ճանապարհը: Շատերին կորցրինք այդ ճանապարհին: Եվ այսօր մենք առաջին հերթին մտածում ենք նրանց մասին, ովքեր չվերադարձան ռազմաճակատից, ովքեր զոհվեցին՝ պաշտպանելով իրենց հայրերի հողը, սոցիալիզմի հայրենիքը:

Ժամանակը, մեզնից հեռացնելով պատերազմական տարիները, թույլ է տալիս ավելի խոր և ավելի լրիվ կերպով գնահատել անմահ սխրանքն այն ռազմիկների, որոնք ընկան հանուն սիրելի հայրենիքի ազատության, անկախության ու պատվի, հանուն սոցիալիզմի, հանուն կյանքի: Նրանք մեզ հետ էին ու մեզ հետ կլինեն՝ մեր սրտերում և մեր գործերում: Հոտնկայս հարգենք զոհված հերոսների հիշատակը: (Բոլորը ոտքի են կանգնում, մեկ րոպե լռություն է տիրում):

Այժմ, դիմելով պատերազմի վետերաններին, ուզում եմ ասել՝ դուք պատվով կատարեցիք ձեր պարտքը երկրի հանդեպ, կուսակցության հանդեպ, պատմության հանդեպ: Մայր հայրենիքը շնորհակալություն է հայտնում ձեզ: Ձեր անուններն առհավետ գրված են սովետական ժողովրդի հերոսական մեծագործությունների տարեգրության մեջ: (Բուռն, երկարատև ծափահարություններ):

Այդ տարեգրության մեջ առհավետ գրված են նաև այն հերոսական պարտիզանների անունները, որոնք ժամանակավորապես օկուպացված հողերը դժոխք էին դարձրել ֆաշիստական զավթիչների համար: Եվ այսօր, որպես անցած պատերազմի խսկական ժողովրդական բնույթի ամենավառ խորհրդանիշներից մեկը, մեր առջև կանգնում է սովետական պարտիզանի առնական կերպարը: (Երկարատև ծափահարություններ):

Պատերազմի ժողովրդական բնույթն առանձնահատուկ ուժով դրսևորվեց ռազմաճակատի և թիկունքի անբաժան, կուռ միասնության մեջ, որն ապահովեց մեր հաղթանակը: Շատ կարճ ժամկետում հազարավոր գործարանների ու ֆաբրիկաների փոխադրումը երկրի արևելք՝ վիթխարի նշանակություն ունեցող աշխատանքային սխրանք էր երկրի պաշտպանական հզորության պահպանման համար: Հաշվի չառնելով ոչ մի զրկանք, թիկունքի աշխատավորներն ամեն ինչ անում էին՝ բանակին տալու կատարյալ զենք, հագցնելու և կերակրելու զինվորներին, ապահովելու ամբողջ ժողովրդական տնտեսության անխափան աշխատանքը: Պատերազմի ժամանակ այնպես էին աշխատում, որ ասես մարդկային հնարավորությունները սահմաններ չունեն: Եվ այս կապակցությամբ առանձնապես ուզում եմ ասել մեր հիանալի կանանց մասին, որոնք իրենց վրա էին վերցրել ռազմաճակատ մեկնած տղամարդկանց աշխատանքի ալյուծի բաժինը: (Բուռն, երկարատև ծափահարություններ):



Հայրենիքը երբեք չի մոռանա այն ավանդը, որ թիկունքի անձնվեր աշխատավորները մուծեցին ընդհանուր հաղթանակի նվաճման գործում: (Երկարատև ծափահարություններ):

Ընկերնե՛ր: Հայրենական մեծ պատերազմի տարիներին սովետական ժողովրդի կատարած ակնառու սխրագործությունն անբաժանելի է կոմունիստների կուսակցության բազմաբեղուն, նպատակասլաց գործունեությունից: Նրա Կենտրոնական կոմիտեն այն շտաբն էր, որտեղից իրականացվում էր պատերազմական գործողությունների քաղաքական և ստրատեգիական բարձրագույն ղեկավարումը: Հենց կուսակցությունն էր կազմակերպում ու համախմբում տասնյակ միլիոնավոր մարդկանց, նրանց եռանդը, նրանց կամքն ու գործողությունններն ուղղում մի նպատակի՝ հաղթանակին: Պատերազմը դարձյալ ու դարձյալ հաստատեց, որ կուսակցությունն ու ժողովուրդը միասնական են, որ չկա այնպիսի ուժ, որն ունակ լինի սասանելու այդ անխորտակ միասնությունը: (Բուռն, երկարատև ծափահարություններ):

Թանկագին ընկերնե՛ր: Գնալով մեր շարքերից պակասում են Հայրենական մեծ պատերազմի մասնակիցները: Նրանց գործերը, նրանց սխրանքները դառնում են լեգենդներ, դառնում ժողովրդի հիշողության և ժողովրդի հոգու մասնիկը: Պատմական ճակատամարտերի վետերանների նկատմամբ հարգանքը, նրանց նկատմամբ հոգատարությունը մեր կյանքի բարոյական օրենքն է, դա օրենք է թե՛ իշխանության մարմինների համար, թե՛ յուրաքանչյուր քաղաքացու համար (ծափահարություններ): Նոր սերունդները պետք է արժանի լինեն իրենց հայրերի ու մայրերի հերոսական գործերին, պատվով առաջ տանեն նրանց հանձնած էստաֆետը: (Ծափահարություններ):

Ֆաշիզմի դեմ տարած հաղթանակի շնորհիվ մեր ժողովուրդը շատ կարճ ժամկետներում ոչ միայն բուժեց պատերազմի վերքերը, այլև բազմապատիկ ավելացրեց երկրի տնտեսական պոտենցիալը, ժողովրդական տնտեսության արտադրանքի թողարկումը: Այսօր կարելի է վստահությամբ հայտարարել, որ մեր երկրի թե՛ արդյունաբերությունը, թե՛ նրա գյուղատնտեսությունն ամուր հիմքի վրա են և հաջողությամբ զարգանում են: Իսկ դրա հետ միասին սկսել են շատ ավելի լավ ապրել մեր մարդիկ: (Ծափահարություններ):

Դա այդպես է հիմա, ընկերնե՛ր, դա այդպես կլինի նաև այսուհետև: Սակայն ժողովրդի բարեկեցության բարձրացումը, սովետական մարդու կյանքի հետագա բարելավումը մեր կուսակցության քաղաքականության անշեղ կուրսն է, որը նոր ուժով հաստատվեց նրա XXIV համագումարում: (Ծափահարություններ):

Ամբողջությամբ վերցրած հետպատերազմյան երեք տասնամյակում թե՛ մեր էկոնոմիկան, թե՛ ժողովրդի կուլտուրական մակարդակը, մեր հասարակության ամբողջ դիմագիծն արդեն մեծապես փոխվել են որակական իմաստով:

Դրա շնորհիվ է՛լ ավելի սերտացել է բանվոր դասակարգի, գյուղացիության և մտավորականության դաշինքը: Է՛լ ավելի են սերտացել մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների եղբայրական միաբանությունը, սովետական ժողովրդի համախմբվածությունը:

Մենք գիտենք մեր ուժերը, մեր հնարավորությունները և վստահությամբ ենք նայում ապագային։ Մեր բանակը խաղաղության բանակ է։ Նա չունի այլ նպատակներ, բացի խաղաղության և ժողովուրդների անվտանգության ապահովումից։ (Ծափահարություններ)։

Մեր ուժի կենարար աղբյուրը եղել է և կլինի կոմունիստական գաղափարայնությունը։ Կուսակցության գաղափարա-քաղաքական հսկայական աշխատանքը մեր հզոր զենքն էր պատերազմի ժամանակ։ Նա զորեղ գործոն է այսօր մեր առջև կանգնած ներքին ու միջազգային վիթխարի խնդիրների լուծման ասպարեզում։

Մեկ տարի էլ չի մնացել մինչև մեր կուսակցության հերթական՝ XXV համագումարը։ Բոլոր կոմունիստները, բոլոր սովետական մարդիկ մտածում են, թե ինչպես արժանավայել դիմավորեն երկրի կյանքի այդ մեծ իրադարձությունը։ Հարվածային աշխատանքով պատասխանելով կուսակցության կոչին, մեր ժողովուրդն այս տարի հաջողությամբ է ավարտում իններորդ հնգամյակը։ Ավարտվում է հաջորդ՝ տասներորդ հնգամյա պլանի առաջադրանքների մշակումը։ Բայց կուսակցությունն ավելի առաջ է նայում, մտածում մեր զարգացման հեռանկարների մասին։

Այնքան էլ շատ տարիներ չեն անցնի, և սովետական ժողովուրդը կհասնի այն խնդիրների գործնական լուծմանը, որոնց մասին դեռ վերջերս մենք միայն երազել կարող էինք։

Ես այս մասին ասում եմ, որովհետև մեր ամբողջ երկիրն ըստ էության մի հսկայական շինարարություն է։ Սովետական մարդկանց և ամենից առաջ մեր հիանալի երիտասարդության հերոսական աշխատանքը թույլ կտա յուրացնելու երկրի արևելքի նոր, վիթխարի տերիտորիաներ ու բնական հարստություններ։ Հայրենիքի քարտեզի վրա երևան կգան նոր լուսավոր, հարմարավետ և գեղեցիկ ձեռնարկություններ ու քաղաքներ։ Տիրաբար կյանք կմտնեն կոմունիզմի կառուցողների նոր սերունդներ, որոնք ամբողջովին բաղկացած կլինեն լրիվ միջնակարգ կամ բարձրագույն կրթություն ունեցող մարդկանցից։

Այո, ընկերնե՛ր, մեր առջև իրոք մեծ խնդիրներ են կանգնած։ Եվ դրանք հետագայում պետք է լուծի մեր երիտասարդությունը, պետք է լուծեն նրանք, ովքեր այսօր վարպետություն են ձեռք բերում արտադրամասերում ու դաշտերում, նրանք, ովքեր նստած են աշակերտական նստարաններին և ուսանողական լսարաններում, ովքեր ծառայում են սովետական բանակի շարքերում։

Մեր թանկագին պատանիներ և աղջիկնե՛ր, հիշեցեք՝ 40-ական թվականների երիտասարդ սերունդն իր ուսերին կրեց Հայրենական պատերազմի մարտերի հիմնական ծանրությունը։ Ձեր կյանքն ու աշխատանքը պետք է արժանի լինի հայրերի օրինակին։ Կուսակցությունն ու ժողովուրդը հավատում են ձեզ և հույս են դնում ձեզ վրա։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։

Սոցիալիզմի ամրապնդումը միևնույն ժամանակ նշանակում է ընդհանուր խաղաղության ամրապնդում։

Երեսուն տարի է, ինչ սովետական ժողովուրդն ապրում և աշխատում է խաղաղության պայմաններում։ Երեսուն տարի Եվրոպան ապրում է խաղաղ իրադրության մեջ։ Դա մեծ նվաճում է, և մենք հպարտությամբ կարող ենք ասել, որ այդ գործի մեջ փոքր ավանդ չի մուծել մեր լենինյան կուսակցության քաղաքականությունը։ (Երկարատև ծափահարություններ)։



Այդ բոլոր տարիներին մենք հետևողական, անխոնջ պայքար էինք մղում հանուն կայուն խաղաղության, հանուն ժողովուրդների ազատության, անկախության և առաջադիմության։

Դա հեշտ պայքար չէր։

Հաղիվ էր ցրվել մարտադաշտերի ծուխը, երբ մենք հարկադրված եղանք բախվել առավել ագրեսիվ իմպերիալիստական շրջանների սանձազերծած «սառը պատերազմի» հետ։ Սոցիալիստական երկրների դեմ ուղղված զրպարտության և պրովոկացիաների հեղեղ, ատոմային շանտաժ, տնտեսական շրջափակման փորձեր, որոնք քաջալերվում էին պատերազմի հետևանքով մեր էկոնոմիկայի ժամանակավոր թուլացումն օգտագործելու հույսով. այս բոլոր միջոցներով իմպերիալիզմի պարագլուխները հույս ունեին թույլ չտալ սոցիալիզմի ամրապնդում, խանգարել աշխարհում նրա ազդեցության աճը։

Բայց «սառը պատերազմ» սանձազերծած ռեակցիայի ուժերը սխալվեցին իրենց հաշիվներում։ Նրանց չհաջողվեց ո՛չ ընկճել, ո՛չ էլ թուլացնել սոցիալիզմը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Սոցիալիստական համերաշխության հզոր ուժը Վարշավայի պայմանագրի և Տնտեսական փոխօգնության խորհրդի միջոցով միավորված պետությունների համագործակցությունը դարձրեց միջազգային կյանքի ամենազորեղ օրգանիզմներից մեկը։ Նրա քաղաքականությունը դարձավ ժողովուրդների խաղաղության և անկախության շահերի պաշտպանության վճռական գործոնը։

Ժողովուրդների ազատագրական շարժման լենինյան սկզբունքային ու հետևողական պաշտպանությունը, ազատագրված երկրների հետ բարեկամության ամրապնդումը, ամբողջ աշխարհի կոմունիստների, բոլոր երկրների բանվորական շարժման հետ ունեցած եղբայրական դաշինքը մեր խաղաղասիրական քաղաքականությանն է՛լ ավելի մեծ ուժ, ազդեցություն և մասսայականություն են հաղորդում ամբողջ աշխարհում։ (Երկարատև ծափահարություններ)։

Նոր իրադրության մեջ բուրժուական աշխարհի ղեկավարները նույնպես սկսեցին հասկանալ, որ «սառը պատերազմը» իր դարն ապրել է, որ հարկավոր է նոր, ավելի խելացի և ռեալիստական քաղաքականություն։ Խաղաղ գոյակցության մեր կոչումն սկսեցին լուրջ արձագանք գտնել կապիտալիստական շատ երկրներում։

Վերջին տարիներս կնքված պայմանագրերն ու համաձայնագրերն իրավաբանորեն վավերագրեցին ֆաշիզմի դեմ տարած հաղթանակի պտուղները և նախադրյալներ ստեղծեցին եվրոպական պետությունների միջև, ինչպես նաև Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ բեղմնավոր, խաղաղ համագործակցություն զարգացնելու համար։

Պատերազմի տարիների փորձը ցույց տվեց, որ հասարակական սիստեմների տարբերությունը խոչընդոտ չէ միավորելու ջանքերն ագրեսիայի դեմ, խաղաղության և միջազգային անվտանգության համար մղվող պայքարում։ Պատերազմի տարիներին մենք համագործակցում էինք, և վատ չէինք համագործակցում՝ պատերազմն արագ ավարտելու համար։ Հիմա մենք լուծում ենք այլ, ոչ պակաս կարևոր և, թերևս, ավելի բարդ խնդիր՝ համագործակցություն հաստատել՝ թույլ չտալու համար նոր, համաշխարհային աղետ։

Մենք չենք կարող մոռանալ նաև այն, որ երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից հետո պատերազմական հրդեհները բազմիցս բոցավառ-

վել են թե՛ Ասիայում, թե՛ Աֆրիկայում, թե՛ Մերձավոր Արևելքում, թե՛ Լատինական Ամերիկայում։ Այդ պատերազմներում, որոնց պատճառն այն է, որ ոռոշակի շրջաններ չեն ցանկանում հաշվել ժողովուրդների ազատագրման հետ, զոհվել են միլիոնավոր մարդիկ։ Կարելի՞ է արդյոք թույլ տալ, որ այսուհետև էլ այդպես լինի։ Ո՛չ, ընկերներ, չի՛ կարելի։

Ժամանակն է, որ նրանք, ում այդ վերաբերում է, գիտակցեն մի պարզ ճշմարտություն՝ մեր ժամանակներում ժողովուրդների ազատագրական շարժումը ճնշելու փորձերը ձախողման են դատապարտված (բուռն ծափահարություններ)։ Եվ դրա լավագույն ապացույցն այն փառապանծ հաղթանակն է, որ ձեռք բերեց վիետնամական ժողովուրդն օտարերկրյա ինտերվենտների ու նրանց դրածոների դեմ մղված կռվում։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Այդ հաղթանակը պսակում է Վիետնամի հայրենասերների բազմամյա հերոսական պայքարը։ Դա արդյունք է այն բանի, որ նրանք հմտորեն օգտագործեցին պայքարի տարբեր ձևերը՝ ռազմական, քաղաքական և դիվանագիտական։ Դրա հետ մեկտեղ այդ հաղթանակը սոցիալիզմի երկրների գործուն, մարտական համերաշխության հաղթանակն է (ծափահարություններ)։ Դա վկայում է նաև ամբողջ աշխարհի առաջադեմ ուժերի համակրանքի և աջակցության բարոյա-քաղաքական մեծ նշանակությունը։ (Ծափահարություններ)։

Այս ուրախ օրերին մենք՝ սովետական մարդիկ, Հարավային Վիետնամի հայրենասերներին մեծ հաջողություններ ենք մաղթում երկիրը նոր, դեմոկրատական սկզբունքներով վերականգնելու գործում (ծափահարություններ)։ Մենք Վիետնամի ամբողջ եղբայրական ժողովրդին մաղթում ենք հաջող առաջընթաց՝ ազգային միասնության, խաղաղության և սոցիալական առաջադիմության ուղիով։ (Երկարատև ծափահարություններ)։

Կարելի է նաև գոհունակությամբ նշել, որ Հնդկաչինում պատերազմի օջախի վերացումը պայմաններ է ստեղծում միջազգային մթնոլորտի հետագա առողջացման համար։ Դրանից կշահի միջազգային լարվածության թուլացման գործը, այդ թվում, ինչպես մենք կարծում ենք, նաև մեր երկրի ու Ամերիկայի Միացյալ Նահանգների հարաբերություններում լարվածության թուլացման գործը։

Խաղաղության պայքարը շարունակվում է, այն չպետք է ունենա ո՛չ մի դադար, ո՛չ մի ընդմիջում։ Հուսալի անվտանգության և կայուն խաղաղության պայմաններում ապրելու իրավունք ունի յուրաքանչյուր ժողովուրդ։ Այստեղ բացառություններ չեն կարող լինել։ (Ծափահարություններ)։

Համաեվրոպական խորհրդակցության մասնակիցներն այժմ ավարտում են այն կարևոր փաստաթղթերի մշակումը, որոնք որոշում են Եվրոպայի կայուն խաղաղության հիմքերը, այդ մայրցամաքի պետությունների խաղաղ, բարիդրացիական հարաբերությունների սկզբունքները և նրանց բեղմնավոր, փոխշահավետ համագործակցության ձևերը։ Ըստ երևույթին, վատ չէր լինի, եթե եվրոպական այդ փորձը այս կամ այն ձևով օգտագործեին նաև մյուս մայրցամաքների պետությունները։

Եվ, իհարկե, խաղաղության ամրապնդման համար ավելի ու ավելի կարևոր նշանակություն է ստանում սպառազինությունների մրցավազքի դադարեցման և զինաթափման պայքարը։

Հակառակ Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետություն-



ների հաստատակամ ջանքերի, որոնք վաղուց պահանջում են կրճատել ռազ-
մական ծախսերն ու պատրաստությունները, աշխարհում շարունակվում է
սպառազինությունների՝ իր մասշտաբներով աննախադեպ մրցավազքը։
Մինչդեռ զենքի, այդ թվում՝ մասսայական ոչնչացման զենքի նման կու-
տակումն ավելի ու ավելի անիմաստ է դառնում։ Հրթիռա-միջուկային պատե-
րազմի սանձազերծումն անխուսափելի ոչնչացում կբերեր հենց ագրեսորին,
չխոսելով արդեն այն հսկայական կորուստների մասին, որ պատերազմը
կպատճառեր նույնիսկ պատերազմի մեջ ձևականորեն չներգրավված բազմա-
թիվ այլ երկրների ու ժողովուրդների։
Պարզ է նաև այն, որ չի կարելի երկար ժամանակ համատեղել միջազգա-
յին լարվածության թուլացման զարգացումը և պետությունների ռազմական
պոտենցիալների մշտական ավելացումը, զենքի կատարելագործումն ու կու-
տակումը։
Ուստի, քիչ է զինաթափման մասին խոսելը, ժամանակն է անցնել պե-
տությունների ռազմական պատրաստությունները կրճատելու կոնկրետ հա-
մաձայնագրերի։ Հենց դրան է ձգտում հասնել Սովետական Միությունը։ (Եր-
կարատև ծափահարություններ)։
Ընկերնե՛ր։ Մեր կուսակցության հետևողական և հաստատակամ խաղա-
ղասիրական քաղաքականության, համաշխարհային սոցիալիզմի ուժերի հզո-
րության և ազդեցության աճի շնորհիվ ետ է մղված նոր համաշխարհային
պատերազմ սանձազերծելու սպառնալիքը։ Եվ մենք ամեն բան կանենք, որ-
պեսզի այդ վտանգը վերջին հաշվով առհասարակ վերացվի։ (Երկարատև ծա-
փահարություններ)։
Նրանց հիշատակը, ովքեր ընկան անցած մեծ պատերազմում՝ պաշտպա-
նելով խաղաղության գործը, ժողովրդի հանդեպ ունեցած պատասխանատվու-
թյունն ու պարտքը, մեզ պարտավորեցնում են կրկնապատիկ եռանդով վարել
մեր կուսակցության քաղաքականությունը, պայքարել աշխարհի կայուն խա-
ղաղության համար։ Սովետական Միությունը և մյուս սոցիալիստական պե-
տությունները միշտ կընթանան այդ ամենաազնիվ և ամենաանհրաժեշտ պայ-
քարի առաջին շարքերում։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։
Թանկագին ընկերնե՛ր։
Հաղթանակի տոնը ոչ միայն մեր մարտական փառքի տոնն է։ Այսօր մեզ
համակած զգացումները բաժանում են անկախության և ազատության հա-
մար, աշխարհի բոլոր մայրցամաքներում խաղաղ կյանքի համար պայքարող
հարյուր միլիոնավոր մարտիկներ։
Թույլ տվեք Սովետական Միության կոմունիստական կուսակցության
Կենտրոնական կոմիտեի, Սովետական Սոցիալիստական Հանրապետություն-
ների Միության Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների սովե-
տի հանձնարարությամբ ի սրտե շնորհավորել բոլոր սովետական մարդկանց
և մեր արտասահմանյան բոլոր բարեկամներին՝ հաղթանակի մեծ տոնի առ-
թիվ։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։
Մենք շնորհավորում ենք պատերազմի վետերաններին, հերոս ճակատա-
յիններին, պարտիզաններին և ընդհատակայիններին, թիկունքի անձնվեր աշ-
խատավորներին, բոլոր նրանց, ովքեր իրենց արյունով ու քրտինքով մոտեց-
րին փառահեղ հաղթանակի ուրախ ժամը։ (Երկարատև ծափահարություններ)։
Մենք շնորհավորում ենք բոլոր նրանց, ովքեր վերածնեցին ավերված

վել են թե՛ Ասիայում, թե՛ Աֆրիկայում, թե՛ Մերձավոր Արևելքում, թե՛ Լատինական Ամերիկայում։ Այդ պատերազմներում, որոնց պատճառն այն է, որ որոշակի շրջաններ չեն ցանկանում հաշտվել ժողովուրդների ազատագրման հետ, զոհվել են միլիոնավոր մարդիկ։ Կարելի՞ է արդյոք թույլ տալ, որ այսուհետև էլ այդպես լինի։ Ո՛չ, ընկերներ, չի՛ կարելի։

Ժամանակն է, որ նրանք, ում այդ վերաբերում է, գիտակցեն մի պարզ ճշմարտություն՝ մեր ժամանակներում ժողովուրդների ազատագրական շարժումը ճնշելու փորձերը ձախողման են դատապարտված (բուռն ծափահարություններ)։ Եվ դրա լավագույն ապացույցն այն փառապանծ հաղթանակն է, որ ձեռք բերեց վիետնամական ժողովուրդն օտարերկրյա ինտերվենտների ու նրանց դրածոների դեմ մղված կռվում։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Այդ հաղթանակը պսակում է Վիետնամի հայրենասերների բազմամյա հերոսական պայքարը։ Դա արդյունք է այն բանի, որ նրանք հմտորեն օգտագործեցին պայքարի տարբեր ձևերը՝ ռազմական, քաղաքական և դիվանագիտական։ Դրա հետ մեկտեղ այդ հաղթանակը սոցիալիզմի երկրների գործուն, մարտական համերաշխության հաղթանակն է (ծափահարություններ)։ Դա վկայում է նաև ամբողջ աշխարհի առաջադեմ ուժերի համակրանքի և աջակցության բարոյա-քաղաքական մեծ նշանակությունը։ (Ծափահարություններ)։

Այս ուրախ օրերին մենք՝ սովետական մարդիկ, Հարավային Վիետնամի հայրենասերներին մեծ հաջողություններ ենք մաղթում երկիրը նոր, դեմոկրատական սկզբունքներով վերականգնելու գործում (ծափահարություններ)։ Մենք Վիետնամի ամբողջ եղբայրական ժողովրդին մաղթում ենք հաջող առաջընթաց՝ ազգային միասնության, խաղաղության և սոցիալական առաջադիմության ուղիով։ (Երկարատև ծափահարություններ)։

Կարելի է նաև գոհունակությամբ նշել, որ Հնդկաչինում պատերազմի օջախի վերացումը պայմաններ է ստեղծում միջազգային մթնոլորտի հետագա առողջացման համար։ Դրանից կշահի միջազգային լարվածության թուլացման գործը, այդ թվում, ինչպես մենք կարծում ենք, նաև մեր երկրի ու Ամերիկայի Միացյալ Նահանգների հարաբերություններում լարվածության թուլացման գործը։

Խաղաղության պայքարը շարունակվում է, այն չպետք է ունենա ո՛չ մի դադար, ո՛չ մի ընդմիջում։ Հուսալի անվտանգության և կայուն խաղաղության պայմաններում ապրելու իրավունք ունի յուրաքանչյուր ժողովուրդ։ Այստեղ բացառություններ չեն կարող լինել։ (Ծափահարություններ)։

Համաեվրոպական խորհրդակցության մասնակիցներն այժմ ավարտում են այն կարևոր փաստաթղթերի մշակումը, որոնք որոշում են Եվրոպայի կայուն խաղաղության հիմքերը, այդ մայրցամաքի պետությունների խաղաղ, բարիդրացիական հարաբերությունների սկզբունքները և նրանց բեղմնավոր, փոխշահավետ համագործակցության ձևերը։ Ըստ երևույթին, վատ չէր լինի, եթե եվրոպական այդ փորձը այս կամ այն ձևով օգտագործեին նաև մյուս մայրցամաքների պետությունները։

Եվ, իհարկե, խաղաղության ամրապնդման համար ավելի ու ավելի կարևոր նշանակություն է ստանում սպառազինությունների մրցավազքի դադարեցման և զինաթափման պայքարը։

Հակառակ Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետություն-



ների հաստատակամ ջանքերի, որոնք վաղուց պահանջում են կրճատել ռազմական ծախսերն ու պատրաստությունները, աշխարհում շարունակվում է սպառազինությունների՝ իր մասշտաբներով աննախադեպ մրցավազքը։

Մինչդեռ զենքի, այդ թվում՝ մասսայական ոչնչացման զենքի նման կուտակումն ավելի ու ավելի անիմաստ է դառնում։ Հրթիռա-միջուկային պատերազմի սանձազերծումն անխուսափելի ոչնչացում կբերեր հենց ագրեսորին, չխոսելով արդեն այն հսկայական կորուստների մասին, որ պատերազմը կպատճառեր նույնիսկ պատերազմի մեջ ձևականորեն չներգրավված բազմաթիվ այլ երկրների ու ժողովուրդների։

Պարզ է նաև այն, որ չի կարելի երկար ժամանակ համատեղել միջազգային լարվածության թուլացման զարգացումը և պետությունների ռազմական պոտենցիալների մշտական ավելացումը, զենքի կատարելագործումն ու կուտակումը։

Ուստի, քիչ է զինաթափման մասին խոսելը, ժամանակն է անցնել պետությունների ռազմական պատրաստությունները կրճատելու կոնկրետ համաձայնագրերի։ Հենց դրան է ձգտում հասնել Սովետական Միությունը։ (Երկարատև ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Մեր կուսակցության հետևողական և հաստատակամ խաղաղասիրական քաղաքականության, համաշխարհային սոցիալիզմի ուժերի հզորության և ազդեցության աճի շնորհիվ ետ է մղված նոր համաշխարհային պատերազմ սանձազերծելու սպառնալիքը։ Եվ մենք ամեն բան կանենք, որպեսզի այդ վտանգը վերջին հաշվով առհասարակ վերացվի։ (Երկարատև ծափահարություններ)։

Նրանց հիշատակը, ովքեր ընկան անցած մեծ պատերազմում՝ պաշտպանելով խաղաղության գործը, ժողովրդի հանդեպ ունեցած պատասխանատվությունն ու պարտքը, մեզ պարտավորեցնում են կրկնապատիկ եռանդով վարել մեր կուսակցության քաղաքականությունը, պայքարել աշխարհի կայուն խաղաղության համար։ Սովետական Միությունը և մյուս սոցիալիստական պետությունները միշտ կլինեն այդ ամենաազնիվ և ամենաանհրաժեշտ պայքարի առաջին շարքերում։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Թանկագին ընկերնե՛ր։

Հաղթանակի տոնը ոչ միայն մեր մարտական փառքի տոնն է։ Այսօր մեզ համակած զգացումները բաժանում են անկախության և ազատության համար, աշխարհի բոլոր մայրցամաքներում խաղաղ կյանքի համար պայքարող հարյուր միլիոնավոր մարտիկներ։

Թույլ տվեք Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների սովետի հանձնարարությամբ ի սրտե շնորհավորել բոլոր սովետական մարդկանց և մեր արտասահմանյան բոլոր բարեկամներին՝ հաղթանակի մեծ տոնի առթիվ։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Մենք շնորհավորում ենք պատերազմի վետերաններին, հերոս ճակատայիններին, պարտիզաններին և ընդհատակայիններին, թիկունքի անձնվեր աշխատավորներին, բոլոր նրանց, ովքեր իրենց արյունով ու քրտինքով մոտեցրին փառահեղ հաղթանակի ուրախ ժամը։ (Երկարատև ծափահարություններ)։

Մենք շնորհավորում ենք բոլոր նրանց, ովքեր վերածնեցին ավերված

քաղաքներն ու գյուղերը, վերականգնեցին ժողովրդական տնտեսությունը, ովքեր հետպատերազմյան տարիներին երկիրը հասցրին կուլտուրայի, գիտատեխնիկական և տնտեսական առաջադիմության նոր բարձունքների։ (Երկարատև ծափահարություններ)։

*Մենք շնորհավորում ենք մեր պանծալի երիտասարդությանը, որը պատվով է առաջ տանում հայրերից ընդունած պայքարի և աշխատանքի էստաֆետը, կոմունիզմի կառուցման էստաֆետը։* (Երկարատև ծափահարություններ)։

*Մենք շնորհավորում ենք երկրի զինված ուժերին, որոնք հուսալիորեն պաշտպանում են սովետական մարդկանց աշխատանքը։* (Երկարատև ծափահարություններ)։

*Թույլ տվեք ամբողջ սրտով երջանկություն մաղթել ամեն մի ընտանիքի, առողջություն և հաջողություններ՝ երկրի յուրաքանչյուր աշխատավորի։ Եվ թող պատերազմի բոցը այլևս երբեք չդիպչի մեր երկրին։* (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

*Փա՜ռք սովետական ժողովրդին, հաղթող ժողովրդին։* (Բուռն ծափահարություններ)։

*Կեցցե՜ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը՝ մեր բոլոր հաղթանակների կազմակերպիչն ու ոգեշնչողը։* (Բուռն ծափահարություններ)։

*Թո՛ղ խաղաղություն լինի ամբողջ աշխարհում։* (Բուռն ծափահարություններ)։

*Կեցցե՜ կոմունիզմը։*

(Բուռն, երկարատև ծափահարություններ, բոլորը ոտքի են կանգնում, դահլիճում թնդում է օվացիան)։

---

# ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻՆ, ՊԱՌԼԱՄԵՆՏՆԵՐԻՆ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ

Երեսուն տարի առաջ ավարտվեց համաշխարհային պատմության մեջ ամենաարյունահեղ, ամենաավերիչ պատերազմը։ Այդ մեծագույն պատերազմում ֆաշիզմի և միլիտարիզմի դեմ տարած հաղթանակը կարևոր ուղենիշ դարձավ մարդկության ճակատագրում։

Ազատասեր ժողովուրդների հիշողության մեջ նա առհավետ թողեց հպարտության և վշտի խոր զգացում։

Հպարտության՝ որովհետև այն ժամանակ տապալվեցին այն ուժերը, որոնք ամբողջ ժողովուրդների ստրկություն էին բերում ֆաշիզմի, ռասիզմի և շովինիզմի սև դրոշով։

Վշտի՝ որովհետև հաղթանակը այնչափ թանկ նստեց։ Այն վճարվեց տասնյակ միլիոնավոր տղամարդկանց, կանանց ու երեխաների կյանքով, վիթխարի ավերածություններով, շատ պետությունների քայքայումով։

Կորուստների մասշտաբները հսկայական են։ Զոհերի ծանրությունը անչափ է։ Բայց դրանք իզուր չէին։

Հիտլերյան Գերմանիայի և միլիտարիստական Ճապոնիայի բանակների դեմ կռված բոլոր մայրցամաքների զինվորները, պարտիզանները, դիմադրության մարտիկները, հակաֆաշիստ ընդհատակայինները, թիկունքում հաղթանակը կռող մարդիկ մարտերում չէին խնայում իրենց կյանքը հանուն իրենց հայրենիքի, իրենց իդեալների, իրենց տան, իրենց ընտանիքի պաշտպանության։ Նրանք ուզում էին ընդմիշտ ոչնչացնել ֆաշիզմն ու միլիտարիզմը, մարդկությանն ընդմիշտ ազատել պատերազմի արհավիրքներից։ Նրանք մեծ ճակատամարտի էին գնում, հույս ունենալով ու երազելով նվաճել կայուն, արդարացի և դեմոկրատական խաղաղություն։ Եվ նրանց հերոսական ջանքերը տվեցին իրենց պտուղները, հանգեցրին հսկայական փոփոխությունների։ Տեղի ունեցան մեծ նշանակություն ունեցող սոցիալական ու քաղաքական տեղաշարժեր, և պատմության մեջ առաջին անգամ ստեղծվեց մարդկության կյանքից համաշխարհային պատերազմը բացառելու օբյեկտիվ հնարավորություն։

Երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտման 30-րդ տարեդարձը առանձնահատուկ տարեդարձ է։ Մենք այն նշում ենք նոր, է՛լ ավելի նպաստավոր մթնոլորտում։ Եվրոպան և աշխարհն ամբողջությամբ վերցրած իրապես մոտեցել են այն մեծ նպատակի իրագործմանը, որին ձգտում էին հակահիտլերյան կոալիցիայի ժողովուրդները։ Պետությունների հարաբերություններում հետզհետե ավելի են հաստատվում իրավահավասարության, սուվերենության, ուժի գործադրումից հրաժարվելու սկզբունքները։

Այդ ուղին դյուրին չէր։ Բոլոր երեսուն տարիներին դժվարին և համառ պայքար էր մղվում։ Այն այսօր էլ դեռ չի ավարտվել։

«Սառը պատերազմը» տասնամյակներով ուշացրեց խաղաղության շենքի կառուցումը։ Ագրեսիվ, հետադեմ շրջանները փորձում էին ուժի դիրքից այնպիսի կարգ պարտադրել աշխարհին, որն արմատապես հակասեր ժողովուրդների շահերին և սոցիալական առաջընթացին։ Դա առաջ բերեց սպառազինությունների չտեսնված մրցավազք՝ նորագույն գիտական նվաճումների օգտա-



2. «Լենինյան ուղիով», № 5



գործումով, և աշխարհը քանիցս կանգնեցրեց նոր պատերազմական աղետի եզրին:

Մենք իրավունք չունենք մոռանալու նաև այն, որ անցած երեսուն տարիների ընթացքում մերթ մեկ, մերթ մյուս երկիրը, իսկ երբեմն էլ աշխարհի ամբողջ շրջաններ ներկվում էին արյունով, դառնում պատերազմական գործողությունների թատերաբեմ, որոնք միլիոնավոր մարդկանց կյանք խլեցին: Դեռ այսօր էլ արաբական և այլ երկրների ժողովուրդները ստիպված են կատաղի պայքար մղել հետադեմ ուժերի դեմ, հաճախ զենքը ձեռքներին, որպեսզի հնարավորություն ունենան ինքնուրույնաբար որոշելու զարգացման իրենց ուղին՝ արդարացի խաղաղության, անկախության և ազատության պայմաններում:

Սակայն սոցիալիստական պետությունների ջանքերով, բոլոր նրանց ջանքերով, ում համար թանկ է խաղաղությունը և ովքեր ակտիվորեն պայքարում էին հանուն խաղաղության, երկրորդ համաշխարհային պատերազմից հետո հրթիռա-միջուկային մահաբեր զենքը գործի չդրվեց: Դրանում կարևոր դեր խաղացին նաև Արևմուտքի ռեալիստորեն մտածող քաղաքական շրջանները:

Մեծ հաղթանակի 30-րդ տարեդարձի օրը սովետական ժողովուրդը, կոմունիստական կուսակցությունը, ՍՍՀՄ Գերագույն սովետը և սովետական կառավարությունը աշխարհի ժողովուրդներին, բոլոր երկրների պառլամենտներին և կառավարություններին կոչ են անում ընդմիշտ վերջ դնել «սառը պատերազմի» վտանգավոր քաղաքականությանը, դադարեցնել միջամտությունը ուրիշ ժողովուրդների և պետությունների ներքին գործերին, ջանքեր գործադրել ստեղծելու մարդկության խաղաղ ապագայի հանդեպ վստահության մթնոլորտ, ապահովելու երկրագնդի կայուն ու տևական խաղաղությունը:

Ահա արդեն երեք տասնամյակ է, ինչ մարդկությունը փրկվել է համաշխարհային պատերազմից: Դա խաղաղասեր ուժերի մեծ նվաճումն է, որի նշանակությունն ավելի ու ավելի խորն են գիտակցում ժողովուրդները:

Խաղաղության ամրապնդման համար դեռ երբեք այնքան շատ բան չի արվել, որքան վերջին տարիներս:

Սոցիալիստական պետությունների հետևողական խաղաղասիրական քաղաքականության շնորհիվ, բոլոր երկրների դեմոկրատական ուժերի ակտիվ գործողությունների, ինչպես նաև «սառը պատերազմի» շարունակման վտանգը հասկացած կառավարությունների ռեալիստական դիրքորոշման շնորհիվ միջազգային ասպարեզում իրադրությունն արմատապես փոխվել է:

Կնքվել են միջազգային լարվածության թուլացման պրոցեսը որոշող պատմական համաձայնագրեր: Հատուկ նշանակություն ունեն աշխարհի երկու խոշորագույն պետությունների՝ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև կնքված համաձայնագրերը միջուկային պատերազմը կանխելու մասին և ստրատեգիական սպառազինությունները սահմանափակելու մասին: Գործում են ՍՍՀՄ-ի և Ֆրանսիայի, ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի, ուրիշ սոցիալիստական երկրների և ԳՖՀ-ի միջև կնքված կարևոր պայմանագրերն ու համաձայնագրերը, Արևմտյան Բեռլինի վերաբերյալ քառակողմ համաձայնագիրը: Առաջին քայլերն են արված սպառազինությունների մրցավազքի սահմանափակման ճանապարհին: Ուղիներ են որոնվում գոյություն ունեցող միջազգային կոնֆլիկտները խաղաղ միջոցներով կարգավորելու համար:

Տարբեր սոցիալական կարգեր ունեցող պետությունների հարաբերություններում հետզհետե ավելի հիմնավոր են հաստատվում այնպիսի տարրեր, ինչպիսիք են սահմանների անխախտելիության ճանաչումը, վիճելի հարցերը բանակցությունների սեղանի շուրջը լուծելը, կանոնավոր կոնսուլտացիաները, տևական տնտեսական համագործակցությունը, գիտության և կուլտուրայի նվաճումների փոխանակումը:

Ավարտվելու վրա է պետությունների համաեվրոպական խորհրդակցությունը՝ աննախադեպ իրադարձությունն այն մայրցամաքի պատմության մեջ, որը երկու համաշխարհային պատերազմների գլխավոր թատերաբեմն է եղել և հարյուրամյակներ շարունակ՝ պայթյունի վտանգով հղի միջազգային հակասությունների հանգուցակետը: Այդ խորհրդակցության հաջողությունը, նրա



հանձնարարականների իրագործումը նոր փուլ կբացեն Եվրոպայի կյանքում, կնշանավորեն խաղաղության և բանականության իդեալների հաղթանակը: Իսկ դա իր հերթին բարերար ազդեցություն կունենա ամբողջ աշխարհում միջազգային հարաբերությունների զարգացման վրա:

Երկրագնդում հիմնականում վերջ է դրված ուղղակի գաղութատիրությանը, որը սուր լարվածության մշտական աղբյուր էր ծառայում և ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական զինված պայքարի օրինական պատճառն էր հանդիսանում: Փլվեց վերջին Պորտուգալական գաղութատիրական կայսրությունը:

Այս բոլոր կարևորագույն տեղաշարժերը ժողովուրդների՝ խաղաղության և առաջադիմության կամքի մարմնացումն են: Դրանք ապացուցում են, որ պետությունների միջև պատերազմների կանխումը ոչ թե ուտոպիա է, այլ իրական հեռանկար և միանգամայն իրագործելի նպատակ: Սկսվել է միջազգային հարաբերությունների սիստեմի խոր վերակառուցումը խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա: Այն կարող է և պետք է շարունակվի ու ավարտվի: Այդ են պահանջում թե՛ զոհվածների հիշատակը և թե՛ ապրողների կենսական շահերը:

Արդի դարաշրջանում խաղաղությունը մարդկության սոցիալական առաջադիմության, իրենց կյանքը ցանկացած ձևով կառուցելու՝ ժողովուրդների սուվերեն իրավունքի ապահովման անհրաժեշտ պայմանն է: Ետպատերազմյան երեք տասնամյակների ամբողջ զարգացումը դրա ակներև ապացույցն է:

Խաղաղության պայմաններում գիտական ու տեխնիկական ժամանակակից գիտելիքների վիթխարի աճը և դրա հետ կապված արտադրողական ուժերի հուժկու զարգացումը հնարավորություն են ընձեռում վերափոխելու մարդկանց նյութական կուլտուրան և կենցաղը: Գիտատեխնիկական հեղաշրջման նվաճումները իրագործելի են դարձնում երկրագնդում կենսապայմանների արմատական բարելավումը, սովի, աղքատության, մասսայական հիվանդությունների վերացումը: Եվ դրա հետ մեկտեղ, երեսուն տարվա ընթացքում կատարված մեծագույն սոցիալական փոփոխությունները և վերափոխումներն ակնբախորեն, տարբեր երկրների օրինակով, ցույց տվեցին, որ կարելի է սանձահարել հակամարդասիրական հետադեմ ուժերը և այդ հիման վրա կանխել գիտատեխնիկական հեղաշրջման բացասական հետևանքները:

Երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից հետո շատ ժողովուրդներ հսկայական նվաճումներ են ձեռք բերել: Բայց դրանք անհամեմատ ավելի շատ կլինեին, եթե այդ ժամանակամիջոցում մահվան ու ավերման զենքի արտադրության համար ծախսված վիթխարի միջոցները, միտքն ու եռանդը օգտագործվեին ստեղծարար նպատակներով:

Այնուհանդերձ, շարունակում են գործել այն ազդեցիկ ուժերը, որոնք համառորեն ձգտում են կասեցնել կայուն խաղաղության առաջընթացը: Արդեն կուտակվել է խաղաղ ժամանակներում չտեսնված քանակությամբ զենք, այդ թվում՝ հրթիռա-միջուկային զենք: Սպառազինությունների մրցավազքը շարունակվում է: Այդ ամենը խոր, հիմնավոր տագնապ է առաջացնում, պահանջում է ուժեղացնել ջանքերը խաղաղության, սպառազինությունների մրցավազքի կանխման և զինաթափման համար, այն բանի համար մղվող պայքարում, որ վերջ տրվի պատերազմի նյութական նախապատրաստությանը:

Սովետական ժողովուրդը, սովետական պետությունը, որոնք իրենց վրա կրեցին ֆաշիզմի դեմ մղված գոտեմարտի հիմնական ծանրությունը, վերստին հաստատ մտադրություն են հայտնում իրենցից կախված ամեն բան անել՝ ուրիշ ժողովուրդների և պետությունների հետ համատեղ բացառելու պատերազմը մարդկության կյանքից:

Արտահայտելով բոլոր սովետական մարդկանց կամքն ու կրքոտ ձգտումը, մենք կջանանք հասնել այն բանին, որ.

— միջազգային հարաբերությունների պրակտիկայում լիովին և համակողմանիորեն հաստատվեն տարբեր սոցիալական կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքները.

— ապահովվի միջազգային լարվածության թուլացման պրոցեսի անշրջելիությունը.

— սահմանափակվի ու դադարեցվի բոլոր տեսակի ու տիպի սպառազինությունների մրցավազքը, ապահովվի անշեղ առաջընթացը դեպի ընդհանուր ու լրիվ զինաթափում:

— վերացվեն պատերազմի սպառնալիքի գոյություն ունեցող օջախները, ընդ որում, անպայման ճանաչվի ու հարգվի յուրաքանչյուր ժողովրդի անկախության և հավասար անվտանգության իրավունքը.

— ստեղծվեն պետությունների անվտանգության և իրավահավասար համագործակցության ռեգիոնալ սիստեմներ և ընդհանուր սիստեմ.

— բստ ամենայնի զարգանան փոխշահավետ կապերը էկոնոմիկայի, գիտության, տեխնիկայի և կուլտուրայի բնագավառներում, ընդ որում, անվերապահորեն ապահովվի սեփական բնական ռեսուրսները տնօրինելու, իր օրենքներն ու սուվերենությունը պաշտպանելու յուրաքանչյուր երկրի իրավունքը.

— ապահովվեն համաշխարհային քաղաքականության բոլոր երկրների և ժողովուրդների արդյունավետ և իրավահավասար մասնակցության ռեալ երաշխիքներ, վերացվեն նեոգաղութատիրությունը և ամեն մի խտրականություն այս կամ այն երկրի նկատմամբ.

— ստեղծվի այնպիսի միջազգային կլիմա, որ պոտենցիալ ագրեսորներին, արկածախնդրությունների և նիզակ ճոճելու սիրահարներին ամենուրեք վճռական հակահարված տրվի, որ անվտանգությունն ու խաղաղ ապագայի հանդեպ վստահությունը իրականում բոլոր երկրների և ժողովուրդների սեփականությունը դառնան:

Երկու հարյուր հիսուն միլիոն սովետական մարդկանց անունից մենք դիմում ենք բոլոր նրանց, ում համար թանկ է մոլորակի ապագան. բոլոր ուժերը գործադրենք, որպեսզի այդ ապագան խաղաղ լինի:

Կայուն խաղաղությունը, ժողովուրդների ազատությունը պատերազմում զոհվածների ամենաարժանի հուշարձանն են:

Կայուն խաղաղությունը, ժողովուրդների ազատությունն այն անմար իդեալն են, որ ոգեշնչում էր ֆաշիզմի դեմ մղված պայքարի հերոսներին և որը ոգեշնչում է մեզ: Եկեք, ուրեմն, ամեն բան անենք, որպեսզի այդ իդեալը դառնա մարդկության կյանքի անխախտ օրենքը:

Մենք այս դիմումը հասցեագրում ենք բոլոր ժողովուրդներին, պառլամենտներին ու կառավարություններին և առաջին հերթին՝ անմիջականորեն և պաշտոնապես նրանց, ովքեր օժտված են միջազգային ասպարեզում իրենց պետություններն ու իրենց երկրների հասարակայնությանը ներկայացնելու վստահությամբ: Մենք հուսով ենք, որ նրանք պրոբլեմի կարևորությանը բստ ամենայնի կարձագանքեն և կոչ ենք անում ակտիվ գործողություններ ծավալել հանուն կայուն ու հուսալի խաղաղության:

| | | |
|---|---|---|
| ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ | ՍՍՀՄ | ՍՈՎԵՏԱԿԱՆ |
| ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ | ԳԵՐԱԳՈՒՅՆ | ՄԻՈՒԹՅԱՆ |
| ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ | ՍՈՎԵՏԻ | ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅՈՒՆ |
| ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ | ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ | |





# ՎԵՐՋԻՆ ՀԱՐՎԱԾԸ


**Վ. Ի. ՉՈՒՅԿՈՎ**

Սովետական Միության մարշալ,
8-րդ գվարդիական բանակի
նախկին հրամանատար


## ՊԼԱՆԸ ԵՎ ԳՐՈՀԸ

*ԲԵՌԼԻՆՅԱՆ ՀԱՐՁԱԿՈՂԱԿԱՆ ՕՊԵՐԱՑԻԱՆ պլանավորվում էր՝ Բեռլինի ուղղությամբ պաշտպանվող հակառակորդի խոշորագույն խմբավորումը ջախջախելու և Գերմանիայի մայրաքաղաքը գրավելու համար: Ըստ այդ պլանի՝ սովետական զորքերը դուրս էին գալու Էլբա գետը և միանալու արևմտյան դաշնակիցների զորքերին: Օպերացիայի նպատակն էր՝ շրջապատել ու միաժամանակ մասնատել բեռլինյան խմբավորումը և ապա ոչնչացնել այն մաս-մաս:*

*1945 թ. մարտի վերջին և ապրիլի սկզբին, երբ սովետական զորքերը ջախջախել էին ֆաշիստական բանակները Պոմերանիայում ու դուրս եկել Բալթիկ ծովի ափը, Զորակայանը որոշել էր եզրափակիչ օպերացիային մասնակից դարձնել երեք ռազմաճակատների. 2-րդ Բելոռուսականը՝ Սովետական Միության մարշալ Կ. Կ. Ռոկոսովսկու, 1-ին Բելոռուսականը՝ Սովետական Միության մարշալ Գ. Կ. Ժուկովի և 1-ին Ուկրաինականը՝ Սովետական Միության մարշալ Ի. Ս. Կոնևի հրամանատարությամբ:*

*Նրանց խնդիրներն էին.*

*2-րդ Բելոռուսական ռազմաճակատը գործում էր Բալթիկ ծովից հարավ,*

---

*Հոդվածը գրված է մեր ամսագրի համար:*

Ապրիլի 24-ի առավոտից ռազմաճակատի բանակների զորքերը շարունակեցին հարձակումն ամբողջ ճակատով՝ հակառակորդին ետ շպրտելով քաղաքի կենտրոնը:

8-րդ գվարդիական բանակի ձախ թևում 28-րդ կորպուսի զորամասերը, շարունակելով զարգացնել հարձակումը, Շյոնեֆելդի շրջանում միացան 1-ին Ուկրաինական ռազմաճակատի՝ գեներալ Պ. Ս. Ռիբալկոյի 3-րդ գվարդիական տանկային բանակի զորամասերին:

Այդ նույն ժամանակ 1-ին Բելոռուսական ռազմաճակատի՝ գեներալ Պերխորովիչի 47-րդ բանակի և 1-ին Ուկրաինական ռազմաճակատի՝ գեներալ Լելյուշենկոյի 4-րդ տանկային բանակի զորամասերը միացան իրար Բեռլինից արևմուտք՝ Կետցին քաղաքի շրջանում:

1-ին Բելոռուսական և 1-ին Ուկրաինական ռազմաճակատների զորքերի միացման շնորհիվ լրիվ շրջապատման մեջ ընկան Բեռլինն ու նրա ամբողջ կայազորը: Դրանով ավարտվեց բեռլինյան օպերացիայի հիմնական փուլը:

Ապրիլի 25-ին Էլբայի վրա, Տորգաուի շրջանում 1-ին Ուկրաինական ռազմաճակատի 58-րդ գվարդիական հրաձգային դիվիզիայի զորամասերը հանդիպեցին 1-ին ամերիկյան բանակի 69-րդ հետևակային դիվիզիայի պարեկներին: Երրորդ ռայխը երկփեղկվել էր. երկու դաշնակից պետությունների՝ ԱՄՆ-ի ու ՍՍՀՄ-ի մարտիկները միմյանց ձեռք սեղմեցին:

...1945 Թ. ԱՊՐԻԼԻ 25-ԻՆ ՍԿՍՎԵՑ ԵՐՐՈՐԴ ռայխի մայրաքաղաք Բեռլինի գրոհը: Շրջապատման մեջ ընկած Բեռլինի կայազորը մտադիր չէր զենքը ցած դնել: Երրորդ ռայխի պարագլուխները, նույնիսկ նման պայմաններում, զինվորներից պահանջեցին կռվել մինչև վերջին փամփուշտը՝ դրանով իսկ անխուսափելի կործանման դատապարտելով մայրաքաղաքի բնակչությանն ու զինվորական կայազորին:

Հիտլերը, Գեբելսը, Բորմանը և ֆաշիստական մյուս պարագլուխները, այնուամենայնիվ, հույս ունեին ոչ միայն կենդանի մնալ, այլև պահպանել ֆաշիզմը՝ որպես մի ծառ, որը ժամանակավորապես կորցրել է տերևները և ունակ է վերստին ծաղկելու:

Ապրիլի 25-ից սովետական զորքերը, իրենց մարտակարգերը վերակազմելով քաղաքային մարտերի համար, հարձակում սկսեցին Բեռլինի կենտրոնի վրա: Բանակները ռազմական գործողությունները վարում էին գրոհային խմբերով ու ջոկատներով, գիշեր ու ցերեկ քայլ առ քայլ տիրելով Երրորդ ռայխի մայրաքաղաքի նորանոր թաղամասերի:

Ահա 8-րդ գվարդիական բանակի մարտիկների սխրանքներից մի էջ: Այն առնչվում է կապավոր, ավագ Ալեքսեյ Բուրմաշովի՝ լայնաթիկունք ու մկանուտ մի սիբիրցու անվան հետ: Ահա ինչ պատմեցին նրա մասին ընկերները. քրտինքը սրբելով արևահար ու հողմահար դեմքից, գվարդիայի ավագ Ալեքսեյ Բուրմաշովը կանգնած էր Շպրեե գետի թեք ափին և, կարծես հիշելով սիբիրյան հարազատ հզոր գետերը, բարձրաձայն ասաց.

— Այսպիսի՜ գետեր ենք անցել: Ա՜յս էլ կանցնենք:

Գվարդիայի ավագ Բուրմաշովի կապի դասակը պետք է առաջիններից մեկը անցներ Շպրեե գետի հակառակ ափը, որպեսզի ժամանակին կապ ապահովեր մեր հարձակվող զորամասերի համար:

Կարծես ուր որ է շուռ է գալու այն փոքրիկ նավակը, որով լողում էին գվարդիայի ավագ Բուրմաշովը և հեռախոսավար Կոշելյովը: Բայց անընդմեջ կրակի տակ նավակն անցավ գետը և ուժեղ զարնվեց ափին: Հրացաններն ու կոճերը ձեռքներին՝ Բուրմաշովն ու Կոշելյովը նավակից թռան գետին ու անմիջապես սկսեցին քաշել հաղորդալարը: Հեռախոսավարներին տեսնելով՝ գերմանացիները կրակի տարափ տեղացին նրանց վրա: Սպանվեց Կոշելյովը: Սրտի խոր ցավով Բուրմաշովը նայեց նրա անշունչ մարմնին: Մերթ սողալով, մերթ վազքով, հակառակորդի կատաղի կրակի տակ, նա իր հետևից քաշում էր հաղորդալարը: Եվ շուտով հրամանատարական կետում լսվեց ծանոթ ձայնը.

— «Օրյո՜լ», «Օրյո՜լ», դուք ինձ լսո՞ւմ եք: Ես «Ռյաբինան» եմ...

Համառ էր մարտը կենտրոնական Տեմպելհոֆ օդանավակայանի համար:



Գվարդիայի ավագ Բուրմաշովին տեսնում էինք հեռախոսասյուներին, վառվող տների կտուրներին, մութ ու խավար նկուղներում: Կամքի ու արիության վիթխարի ուժ է հարկավոր, որպեսզի մարդը գնդակների ու բեկորների տարափի տակ բարձրանա հեռախոսասյանը և միացնի հաղորդալարերը:

Երբ մեր զորամասերը մոտեցան օդանավակայանին, Բուրմաշովը շտապում էր կապի գիծը միացնել այն շենքին, ուր ներխուժել էին մեր գրոհային խմբերը: Կաբելի կոճը ձեռքին, նա վազում էր փողոցով: Աջ ու ձախ թափվում էին արկերի բեկորները, սուրում գնդակները: Տասը մետր էր մնացել մինչև այն շենքը, որտեղ մարտ էին մղում մեր գրոհային խմբերը: Նա արդեն վազելով մոտենում էր շենքին, երբ թշնամու արկի մի բեկոր մխրճվեց նրա կուրծքը: Ձեռքով սեղմելով վերքը, Բուրմաշովը բղավեց մարտիկներին.

— Վերցրե՛ք կապը:

Իսկ ինքը ընկավ սալահատակին:

Դրանք պատերազմի տարիներին Բուրմաշովի անցկացրած հազարավոր կիլոմետր հեռախոսալարի վերջին մետրերն էին: Եվ այդ կապի վերջին գիծն անցնում էր գերմանական մայրաքաղաքի փողոցներով:

Այս կապակցությամբ ես կցանկանայի բերել ևս մի օրինակ 220-րդ գվարդիական գնդի 1-ին գումարտակի հրամանատարի քաղգծով տեղակալ, ավագ լեյտենանտ Ն. Վ. Կապուստյանսկու աշխատանքի պրակտիկայից: Արտաքուստ նա ոչնչով աչքի չէր ընկնում գումարտակի սպաների մեջ:

— Քաղգծով տեղակալ է, բայց շատ խոսել չի սիրում: Ավելի շատ լսում է: Իսկ երբ խոսում է, նրա ամեն մի խոսքը մեխվում է մարդու հոգում...

Բեռլինի գրոհի օրերին Կապուստյանսկուն դժվար էր գտնել գումարտակի շտաբում: Ոչ ոք չգիտեր, թե նա որտեղ է հասցնում նախաճաշել, ճաշել, ընթրել կամ հանգստանալ: Մի կես ժամով հայտնվում էր գումարտակի հրամանատարի մոտ, տեղեկանում իրադրությանը ու նորից անհետանում: Հարցնում ես նրա մասին ջոկատում, քեզ պատասխանում են.

— Քաղտեղակալը հենց նոր մեզ մոտ էր. պատմեց աչքի ընկած մարտիկների փորձի մասին, կազմակերպեց մարտական թերթիկի լույս ընծայումը և գնաց հարևան ջոկատ:

— Ո՞ւմ հետ է ման գալիս:

— Մենակ է:

— Բայց այդպես նա կարող է հանկարծ սնայպերի գնդակի զոհ դառնալ կամ մնալ փլվածքների տակ, և այլևս ձեր քաղտեղակալին չեք գտնի:

— Մենք էլ ենք այդպես մտածում, բայց նա թույլ չի տալիս իրեն ուղեկցել: Ասում է՝ առանց պոչերի էլ յոլա կգնամ:

Ուշ գիշերին կամ հանգստի ժամին Կապուստյանսկին հավաքում էր իր օգնականներին, ամփոփում օրվա արդյունքները ու նորից գնում մարտիկների մոտ:

Հարկ կա՞, արդյոք, ասելու, որ գումարտակներում ու վաշտերում կուսակցական աշխատանքի նման ոճը լավ արդյունք էր տալիս:

ՌԱԶՄԱՃԱԿԱՏՆԵՐԻ ՈՒ ԲԱՆԱԿՆԵՐԻ ԶՈՐՔԵՐԻ ղեկավարությունը համատացած էր, որ մեր զինվորների ու հրամանատարների հերոսական սխրանքները չեն դադարի մինչև պատերազմի վերջին օրը, մինչև լիակատար հաղթանակը: Մեր բազմազգ բանակում մինչև պատերազմի վերջը միլիոնավոր մարդիկ մրցության մեջ էին մտել ինչպես մարտական, այնպես էլ աշխատանքային ճակատում:

Մրցում էին գնդերն ու դիվիզիաները, բանակներն ու ռազմաճակատները: Բայց մարտական խնդիրների լավագույն կատարման համար գլխավոր մրցությունը տեղի էր ունենում մարդկանց միջև, այդ թվում և տարբեր ազգությունների զինվորների, սպաների ու գեներալների միջև:

Սովետական հանրապետությունների՝ անխախտ դաշինքով կապված ժողովուրդները կարող են հպարտանալ մեծ Հայրենականի իրենց հերոսներով: Կառավարական շքանշաններն ու մեդալները, Սովետական Միության հերոս-

ների ոսկե աստղերը զարդարում են տարբեր ազգությունների միլիոնավոր մարդկանց կուրծքը:

Սովետական Հայաստանի ժողովուրդը կարող է և պետք է պարծենա, որ դաստիարակել ու աճեցրել է այնպիսի հերոս զավակներ, ինչպիսիք են Հ. Ք. Բաղրամյանը, Հ. Խ. Բաբաջանյանը, Ա. Գ. Կարապետյանը և արևաշող Հայաստանի՝ ինձ հայտնի ուրիշ շատ հերոսներ:

Ես հիշում եմ և երբեք չեմ մոռանա հրավառ Ստալինգրադը և մեր մարտական ուղին Վոլգայի ափերից մինչև Բեռլին, որտեղ հանդիպեցին սովետների երկրի հարվածային մարտական ուժերը, բազմաթիվ ճակատամարտերի փառապանծ հերոսները: Նրանք այնտեղ եկան որպես ֆաշիզմից Եվրոպայի ժողովուրդների, ինչպես նաև խաբված գերմանացիների ազատագրողներ:

Ապրիլի 27-ի գիշերը ես իմ հրամանատարական դիտակետը փոխադրեցի առաջավոր գծին ավելի մոտ՝ Բելլե-Ալիանսեշտրասսե: «Ֆլյուգ-հաֆեն» օդանավակայանի գլխավոր կորպուսից ոչ հեռու գտնվող հինգհարկանի մեծ շենքը դարձավ իմ հրամանատարական դիտակետ: Տան մուտքի վերևում պատին սևին էր տալիս ցեմենտից շինած արծիվը՝ ճիրաններում ֆաշիստական սվաստիկան, երրորդ ռայխի զերբը:

## ԵՐՐՈՐԴ ՌԱՅԽԻ ՎԵՐՋԻՆ ԺԱՄԵՐԸ

ԵՎ ԱՅՍՊԵՍ, ԱՊՐԻԼԻ 28—30-ԻՆ ռազմաճակատի զորքերը, հաղթահարելով հակառակորդի, հատկապես ՍՍ զորքերի համառ դիմադրությունը, սկսեցին թափանցել Բեռլինի կառավարական թաղամասերը. 8-րդ գվարդիական և 1-ին գվարդիական տանկային բանակների զորքերը՝ հարավից, Վ. Ի. Կուզնեցովի 3-րդ հարվածային և Ն. Է. Բերզարինի 5-րդ հարվածային բանակները՝ արևելքից ու հյուսիսից, Ս. Ի. Բոգդանովի 2-րդ գվարդիական տանկային բանակի տանկիստները՝ արևմուտքից, 1-ին Ուկրաինական ռազմաճակատի զորքերը՝ հարավ-արևմուտքից:

Երեկոյան, երբ ես իմ դիտակետից վերադարձա բանակի շտաբ, որը տեղավորված էր Յոհաննիսթալի շրջանում, ինձ զանգահարեց ռազմաճակատի հրամանատար, մարշալ Գ. Կ. Ժուկովը: Նա հարցրեց.

— Հույս կա՞, արդյոք, որ մինչև մայիսմեկյան տոնը մենք լրիվ կմաքրենք Բեռլինը:

Ես պատասխանեցի, որ, դատելով հակառակորդի դիմադրությունից, որը թեև գնալով թուլանում է, ես, այնուամենայնիվ, հույս չունեմ, թե նա այդքան շուտ կկապիտուլյացիայի կենթարկվի:

Դրանով մեր խոսակցությունն ավարտվեց:

Երեկոյան ինձ հրավիրեցին բանակի քաղբաժնի աշխատողները: Նրանք որոշել էին ընթրել ինձ հետ, որպեսզի միաժամանակ խոսեին նաև առաջիկա խնդիրների մասին: Ես համաձայնեցի: Քաղբաժնում էին գրողներ Վսևոլոդ Վիշնևսկին, Եվգենի Դոլմատովսկին, կոմպոզիտորներ Տիխոն Խրեննիկովը, Մատվեյ Բլանտերը: Սեղան նստելու պահն էր: Այդ ժամանակ ինձ շտապ կանչեցին հեռախոսի մոտ: Զանգահարում էր 4-րդ գվարդիական հրաձգային կորպուսի հրամանատար, գեներալ-լեյտենանտ Վ. Ա. Գլազունովը: Նա զեկուցեց.

— 35-րդ դիվիզիայի 102-րդ գվարդիական հրաձգային գնդի առաջավոր գիծն է եկել գերմանական բանակի փոխգնդապետ Զեյֆերտը՝ սպիտակ դրոշակով և ռուսական զորքերի հրամանատարությանը հասցեագրված մի ծրարով: Նա խնդրում է նշել, թե Գերմանիայի գերագույն հրամանատարության ներկայացուցիչները որտեղո՞վ և ե՞րբ կարող են անցնել ռազմաճակատի գիծը:

— Պարզ է,— պատասխանեցի ես:— Ասացեք այդ փոխգնդապետին, որ մենք պատրաստ ենք ընդունել բանագնացներին: Թող նա նրանց առաջնորդի հենց այն հատվածով, որտեղից ինքն է անցել: Կրակն այդ հատվածում դադարեցնել, բանագնացներին ընդունել և ուղարկել իմ առաջավոր դիտակետ, ուր հենց հիմա կմեկնեմ նաև ես:

Հեռախոսի մոտ կանչեցի բանակի շտաբի պետ Վ. Ա. Բելյավսկուն և հրամայեցի հուսալի կապ ապահովել ինձ համար: Այնուհետև, ամեն ինչի մասին



հեռախոսով զեկուցելով մարշալ Ժուկովին, ես մայիսի 1-ի գիշերը շտաբի սպաների, թարգմանչի ու համհարզի հետ մեկնեցի դիտակետ:

Դիտակետում երկուսով ենք՝ ես և համհարզը: Անցնում է ինչ-որ կարևոր իրադարձությունների սպասման մեկուկես ժամ: Բայց ինչպիսի՞ իրադարձությունների՝ հայտնի չէ: Գիշերվա ժամը երկուսն է արդեն: Ծխախոտ ծխախոտի հետևից եմ վառում: Հիշում եմ մարտական օրերը, գիշերները, շաբաթներն ու ամիսները. չէ՞ որ պատերազմը շարունակվում է արդեն գրեթե չորս տարի: Աչքերիս դեմ փութանցիկ հառնում են մարտական կյանքի դրվագները: Ահա Վոլգան, որն այժմ թվում է այնքան հեռու և միաժամանակ այնքան մոտիկ. գետի վրա լողում է վառվող նավթը, մոլեգնող բոցը լափում է ամեն ինչ՝ բեռնանավերը, նավակները: Ահա Զապորոժիեն, գիշերային գրոհը, այնուհետև Նիկոպոլը, Օդեսան, Լյուբլինը, Լոձը, Պոզնանը և, վերջապես, Բեռլինը: 62-րդ բանակի մարտիկները, պաշտպանելով Վոլգայի սրբազան բնագծերը, այժմ կանգնած են Շպրեեի վրա, պարտված Բեռլինում և սպասում են: Սպասում են բանագնացներին, որոնց ուղարկում են երրորդ ռայխի ղեկավարները:

Եկավ Վսևոլոդ Վիշնևսկին ու նրա հետ՝ Եվգենի Դոլմատովսկին և Մատվեյ Բլանտերը:

Վերջապես գիշերվա ժամը երեքն անց հիսուն րոպեին դուռը բացվեց, և սենյակ մտավ գերմանացի գեներալը՝ վզից կախված երկաթե խաչով ու թևին կարած ֆաշիստական սվաստիկայով:

Ուշադիր զննում եմ նրան: Միջահասակ է, ամրակազմ, սափրված գլխով և սպիավոր դեմքով: Աջ ձեռքով ֆաշիստական բնորոշ ժեստով ողջունում է մեզ, իսկ ձախով մեկնում է ինձ փաստաթղթերը: Նա Գերմանիայի ցամաքային զորքերի գլխավոր շտաբի պետ, գեներալ Կրեբսն է. եկել է կայսերական գրասենյակից:

Կրեբսը թարգմանչի միջոցով հայտնում է.

— Դուք առաջին օտարերկրացին եք, որին ես հայտնում եմ, որ ապրիլի 30-ին Հիտլերը կամովին ինքնասպան եղավ:

Այդ ասելով, Կրեբսը մի պահ հապաղեց. կարծես ցանկանում էր ստուգել, թե ինչ տպավորություն գործեց ինձ վրա իր հայտարարությունը: Լսելով Կրեբսի հաղորդումը՝ ես հանգիստ ասացի.

— Մենք այդ մասին արդեն գիտենք:

Ապա, փոքր-ինչ հապաղելով, ես խնդրեցի Կրեբսին ճշտել, թե ե՞րբ է տեղի ունեցել այդ:

Կրեբսը, շփոթվելով, ասաց.

— Դա տեղի ունեցավ երեկ, ապրիլի 30-ին, ժամը մոտ 15-ին...

Այնուհետև Կրեբսը կարդաց Գեբելսի և Բորմանի դիմումը. «Մեզնից հեռացած ֆյուրերի կտակի համաձայն, մենք գեներալ Կրեբսին լիազորում ենք հետևյալում.

Մենք սովետական ժողովրդի առաջնորդին հայտնում ենք, որ այսօր, ժամը 15-ն անց 50 րոպեին, կյանքից ինքնակամ հեռացավ ֆյուրերը: Իր օրինական իրավունքի հիման վրա ֆյուրերը ողջ իշխանությունը կտակել է Դենիցին, ինձ և Բորմանին: Ես Բորմանին լիազորել եմ կապ հաստատելու սովետական ժողովրդի առաջնորդի հետ: Այդ կապն անհրաժեշտ է ամենից ավելի մեծ կորուստներ կրած տերությունների միջև հաշտության բանակցություններ վարելու համար: Գեբելս»:

Կրեբսը, ընթերցելով Գեբելսի հայտարարությունը, ինձ հանձնեց երկու փաստաթուղթ ևս. գլխավոր շտաբի պետ, գեներալ Կրեբսին տրված լիազորությունը ռուսական Գերագույն հրամանատարության հետ բանակցություններ վարելու իրավունքի մասին (կայսերական գրասենյակի պետի բլանկը կնիքով ստորագրել է Բորմանը, 30—4—1945 թ.), Հիտլերի անձնական և քաղաքական կտակները՝ Գերմանիայի կայսերական նոր կառավարության և զինված ուժերի գերագույն հրամանատարության ցուցակով (այս փաստաթուղթը ստորագրել

են Հիտլերը և վկաները. ամսաթիվը նշված է՝ 1945 թվականի ապրիլի 29, ժամը 4.00 րոպե):

Վկաներ. դ-ր Յոզեֆ Գեբելս
Վիլհելմ Բուրգդորֆ
Մարտին Բորման
Հանս Կրեբս»:

Կարդալով փաստաթղթերը՝ ես դիմում եմ գեներալ Կրեբսին.

— Ի՞նչ կառավարություն կարող է լինել, եթե ձեր ֆյուրերը ինքնասպան է եղել: Չէ՞ որ հենց այդ ակտով նա, ըստ էության, ընդունել է իր գլխավորած ռեժիմի սնանկությունը: Այժմ նրա տեղակալներից որևէ մեկն է իրավասու որոշելու՝ շարունակել հետագա արյունահեղությունը, թե ոչ: Այժմ ո՞վ է փոխարինում Հիտլերին:

— Գեբելսը: Նա նշանակվել է կանցլեր: Բայց մահվանից առաջ Հիտլերը ստեղծել էր նոր կառավարություն՝ պրեզիդենտ, գրոս-ադմիրալ Դենիցի գլխավորությամբ: Մենք խնդրում ենք հնարավորություն ընձեռել, որ նոր կառավարությունը հավաքվի՝ հաշտության բանակցություններ վարելու համար:

Վերցնում եմ հեռախոսափողը, կանչում մարշալ Ժուկովին և զեկուցում.

— Ինձ մոտ է եկել Գերմանիայի ցամաքային ուժերի գլխավոր շտաբի պետ, գեներալ Կրեբսը: Նա հայտնեց, որ Հիտլերը ինքնասպան է եղել: Գեբելսը՝ որպես կանցլեր, և Բորմանը՝ որպես նացիստական կուսակցության նախագահ, լիազորել են Կրեբսին՝ զինադադարի մասին բանակցություններ վարելու մեզ հետ: Կրեբսը խնդրում է դադարեցնել ռազմական գործողությունները և հնարավորություն ընձեռել հավաքվելու պրեզիդենտ Դենիցի գլխավորած նոր կառավարությանը, որը կորոշի գերմանացիների հետագա անելիքները:

Մարշալ Ժուկովը նախազգուշացրեց, որ ես հեռախոսափողը պահեմ ականջիս, քանի որ նա զեկուցելու է Մոսկվա:

Մեկ րոպե հետո նա ինձ հարցնում է.

— Հիտլերը ե՞րբ է ինքնասպան եղել:

Այդ մասին հարցնում եմ Կրեբսին: Վերջինս անմիջապես ճշտեց.

— Երեկ, ապրիլի 30-ին, ժամը 15-ն անց 50 րոպեին:

Հայտնում եմ այդ մասին Ժուկովին, իսկ նա՝ Մոսկվա:

Մեկ րոպե հետո լսում եմ հեռախոսով.

— Հարցրեք Կրեբսին, թե ի՞նչ են ուզում իրենք՝ զենքը ցած դնել և անձնատո՞ւր լինել, թե՞ զբաղվել հաշտության բանակցություններով:

Ուղղակի հարցնում եմ Կրեբսին.

— Խոսքը կապիտուլյացիայի մասի՞ն է և դուք լիազորվա՞ծ եք արդյոք իրականացնելու այն:

— Ո՛չ, կան ուրիշ հնարավորություններ:

— Ինչպիսի՞:

— Թույլ տվեք և օգնեք մեզ՝ հավաքելու նոր կառավարությունը, որ նշանակել է Հիտլերն իր կտակով, և կառավարությունը այդ հարցը կլուծի ձեր օգտին...

Պատասխանում եմ մարշալ Ժուկովի հարցերին: Կրեբսին ասում եմ.

— Մեզ համար հասկանալի է, թե ի՛նչ է ցանկանում ձեր նոր կառավարությունը, առավել ևս՝ մեզ հայտնի է ձեր բարեկամներ Հիմլերի և Գյորինգի փորձը՝ շոշափել մեր դաշնակիցների տրամադրությունը: Մի՞թե դուք այդ մասին չգիտեք:

Կրեբսը զգաստացավ, հավանաբար իմ հարցը նրա համար անսպասելի էր:

— Ես Հիտլերի կտակով կազմված օրինական կառավարության լիազորված անձն եմ: Մենք խնդրում ենք զինադադար, որպեսզի հավաքվենք կառավարության բոլոր անդամներով, քննենք դրությունը և կնքենք ձեզ համար և մեզ համար ձեռնտու հաշտություն:

— Զինադադարի կամ հաշտության հարցը,— ընդգծեցի ես,— կարող է լուծվել միայն լրիվ կապիտուլյացիայի հիման վրա: Սա է մեր և մեր դաշնակիցների կամքը:



Նրան հայտնելով այն մասին, որ մենք ունենք միայն մեկ պայման՝ անվերապահ կապիտուլյացիա, հեռացա հարևան սենյակը՝ ռազմաճակատի հրամանատարին զանգահարելու համար:

Մարշալ Ժուկովին զեկուցելիս, հեռախոսով հայտնեցի իմ նկատառումները. — Կրեբսը եկել է ոչ թե կապիտուլյացիայի մասին բանակցություններ վարելու, այլ, ըստ երևույթին, իրադրությունն ու մեր տրամադրությունը պարզելու, թե մենք սեպարատ բանակցությունների չե՞նք դիմի արդյոք նոր կառավարության հետ. մեր դեմ պատերազմը շարունակելու համար նրանք ուժ չունեն: Գեբելսը և Բորմանը լիակատար կործանումից առաջ դիմում են վերջին քայլին, այն է՝ բանակցություններ սկսել մեր կառավարության հետ: Նրանք ամեն տեսակ սողանցքներ ու ճեղքվածքներ են որոնում մեր և դաշնակիցների միջև: Կրեբսը բացահայտորեն չի շտապում պատասխան տալ հարցերին. նա ցանկանում է ժամանակ շահել, քանի որ մեր զորքերը գիշերը և հիմա էլ շարունակում են հարձակումը, բացի այն հատվածից, որտեղից անցել է Կրեբսը:

Մարշալ Ժուկովը մի քանի հարցեր տվեց և ասաց, որ ինքն այդ ամենի մասին կզեկուցի Մոսկվա ու հրամայեց սպասել ցուցումների:

Մարշալ Ժուկովի հետ ունեցած խոսակցությունից հետո վերադառնում եմ իմ սենյակը և դիմում Կրեբսին.

— Հիտլերի կտակում որոշակիորեն ասված է, որ ինքը կառավարություն է ստեղծում այնպիսի մարդկանցից, «որոնք վարելու են պատերազմը բոլոր միջոցներով»: Ձեզ համար ավելի լավ չէ՞ նախ համաձայնել վերջ տալու պատերազմին, իսկ ապա սկսել բանակցությունները:

Կրեբսը ինչ-որ երկար է մտածում.

— Պատասխանը կարող է տալ իմ կառավարությունը, այլ ոչ թե ես...

Դրսից դեռ լսվում է հրանոթների որոտը: Արդեն լուսացել է: Մոսկվայից հրամայել են սպասել պատասխանի:

Ինձ նորից են կանչում հեռախոսի մոտ: Մարշալ Ժուկովը հայտնում է, որ ինձ մոտ է ուղարկված իր տեղակալը՝ բանակի գեներալ Սոկոլովսկին: Խնդրում է իմանալ Հիմլերի մասին, որտե՞ղ է Ռիբենտրոպը, ո՞վ է գլխավոր շտաբի պետը, որտե՞ղ է Հիտլերի դիակը:

Հարցերը ճշտում եմ Կրեբսի հետ, հեռախոսով կանչում մարշալ Ժուկովին և զեկուցում.

— Գերագույն գլխավոր հրամանատար, գրոս-ադմիրալ Դենիցը Մեկլենբուրգում է, նրա մոտ է նաև Հիմլերը, որին Գեբելսը համարում է դավաճան: Հերման Գյորինգը, իբր, հիվանդ է, հրաժարվում է: Բեռլինում են միայն Գեբելսը, Բորմանը, Կրեբսը և Հիտլերի դիակը:

Եկավ գեներալ Սոկոլովսկին: Ես զեկուցում եմ նրան Հիտլերի ինքնասպանության, կտակի մասին, Դենիցի, Բորմանի, Հիմլերի մասին, մի խոսքով այն ամենի, ինչ հաջողվել էր պարզել Կրեբսի հետ իմ վարած երկարատև ու այնքան ձանձրալի բանակցությունների ժամանակ:

Լսելով ինձ՝ Սոկոլովսկին պահանջում է կապիտուլյացիա և անպատակ արյունահեղության դադարեցում: Կրեբսը պահանջում է ճանաչել նոր կառավարությունը Դենիցի գլխավորությամբ, զինադադար և բանակցություններ սովետական կառավարության հետ: Կրեբսի խնդրանքով Սոկոլովսկին թույլատրում է հեռախոսալարով Գեբելսի հետ՝ ռայխսգրասենյակ:

Զեկուցում են, որ կապը կայսերական գրասենյակի հետ գործում է: Կրեբսը մի քիչ սրտապնդվեց ու սկսեց խոսել Գեբելսի հետ: Գեբելսը պահանջում է ետ վերադարձնել գեներալ Կրեբսին: Մենք տալիս ենք մեր համաձայնությունը Կրեբսի վերադարձի վերաբերյալ:

Կրեբսը բարձրաձայն կարդում է մեր պայմանների իր գրառումը.

1. Բեռլինի կապիտուլյացիա.
2. Բոլոր անձնատուր եղողները պարտավոր են հանձնել զենքը.
3. Ընդհանուր հիմունքներով պահպանվում է սպաների ու զինվորների կյանքը.
4. Վիրավորների համար ապահովվում է օգնություն.

5. Հնարավորություն է վերապահվում դաշնակիցների հետ բանակցություններ վարել ռադիոյով։

Ժամը 13-ն անց է 08 րոպե։ Կրեբսը գնաց։ Երրորդ ռայխի ղեկավարության բանագնացը վերադարձավ կայսերական դրասենյակ, չցանկանալով կանգնեցնել Բեռլինի ավերումը և դադարեցնել ապարդյուն զոհերը թե՛ մեկ, և թե՛ մյուս կողմից, ներառյալ և Բեռլինի քաղաքացիական բնակչության։

ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԸՆԹԱՑՔԸ ԱՐԱԳԱՑՆԵԼՈՒ նպատակով մենք հրաման արձակեցինք ուժեղացնել կրակը և մինչև վերջ ջախջախել թշնամուն։ Այդ հրամանով բոլոր կողմերից լսվեցին «կատյուշաների» համազարկերը, կառավարական թաղամասերի, կայսերական դրասենյակի, ռայխստագի վրա տեղացին տարբեր տրամաչափի հազարավոր ականներ ու արկեր։

Շատ շուտով զգացվեց այդ հուժկու և լավ կազմակերպված կրակի դրական արդյունքը։ Դիվիզիաներից ու կորպուսներից սկսեցին հաղորդագրություններ ստացվել զորքերի հաջող գործողությունների մասին։

28-րդ գվարդիական հրաձգային կորպուսի հրամանատար, գեներալ Ա. Ի. Ռիժովը զեկուցեց, որ իր զորքերը հաջողությամբ զարգացնում են հարձակումը դեպի հյուսիս, վերականգնվել է կրակային կապը Ս. Ի. Բոգդանովի 2-րդ գվարդիական տանկային բանակի հետ։

74-րդ գվարդիական հրաձգային դիվիզիայի հրամանատար, գեներալ Դ. Ե. Բականովը ուրախացրեց, որ իր գվարդիականները լրիվ գրավել են Պոտսդամի կայարանը և Բրանդենբուրգյան դարպասների վրայով հարձակումը շարունակում են դեպի ռայխստագ։

Գրավված է 152-րդ թաղամասը՝ գեստապոն։ Ոչնչացված է ամենավտանգավոր իժերի բույնը։

Գրոհը զարգանում է։ Գրավված են կառավարական շատ շենքեր։ Մեր զորքերի օղակը սեղմվում է։

Բանակի հրետանու հրամանատար, գեներալ Պոժարսկին զեկուցում է. հրամայված է կրակ բաց անել միայն ուղիղ նշանառությամբ։

Տվյալներ են ստացվում այն մասին, որ գերմանական ամբողջ ստորաբաժանումներ գերի են հանձնվում։

Մայիսի 2-ի 0 ժամ 40 րոպեին ստանում ենք գերմանական մի ռադիոգիր ռուսերեն. «Ալլո՛։ Ալլո՛։ Խոսում է 56-րդ գերմանական տանկային կորպուսը։ Խնդրում ենք դադարեցնել կրակը։ 0 ժամ 50 րոպեին բանագնացներին ուղարկում ենք Պոտսդամի կամուրջի մոտ։ Տարբերանշանն է սպիտակ դրոշակը»։

Հրամայում եմ. կրակը դադարեցնել միայն բանագնացների հետ հանդիպման հատվածում։ Վերջիններիս ընդունել։

Դարձյալ զանգ 47-րդ գվարդիական հրաձգային դիվիզիայից։ Զեկուցում են. ...գլխավոր շտաբի գնդապետ ֆոն Դուֆվինգը՝ 56-րդ տանկային կորպուսի շտաբի պետը, հայտնեց, որ ինքը լիազորված է գեներալ Վեյդլինգի անունից հայտնելու սովետական հրամանատարությանը՝ դիմադրությունը դադարեցնելու... և անձնատուր լինելու որոշման մասին։

Հեռախոսի մոտ եմ կանչում մարշալ Ժուկովին և զեկուցում.

— Բեռլինի կայազորը ռազմաճակատի շատ հատվածներում սկսել է գերի հանձնվել։ 56-րդ տանկային կորպուսի հրամանատար, Բեռլինի պաշտպանության պատասխանատու, հրետանու գեներալ Վեյդլինգն իր շտաբով գերի է հանձնվում և շուտով կլինի ինձ մոտ։ Այժմ այստեղ է պրոպագանդայի մինիստրության պատվիրակությունը՝ դոկտոր Ֆրիչեի գլխավորությամբ, որը Գեբելսի տեղակալն է։ Պատվիրակությունը հայտնեց, որ Գեբելսը ինքնասպան է եղել, Բորմանը և Գեբելսի ընտանիքը իբր զոհվել են կայսերական դրասենյակում՝ գազի պայթյունից։ Դոկտոր Ֆրիչեն համաձայն է կապիտուլյացիային և խնդրում է իրեն հնարավորություն ընձեռել՝ հանդես գալու ռադիոյով և զորքերին ու ժողովրդին կոչ անելու, որ ցած դնեն զենքը և դադարեցնեն դիմադրությունը։

Մարշալ Ժուկովը հարցնում է.



— Կարելի՞ է վստահ լինել, որ դոկտոր Ֆրիչեն ռադիոյով գերմանական ժողովրդին կասի այն, ինչ պետք է։

Ես պատասխանեցի, որ կարելի է, բայց մեր վերահսկողությամբ։

Մայիսի 2-ն է, ժամը 6-ն անց 45 րոպե։ Հեռախոսի մոտ է կանչում մարշալ Ժուկովը։ Նրա հետ տեղի ունեցած խոսակցությունից հետո հայտարարում եմ բոլոր ներկաներին.

«Առաջին։ Սովետական հրամանատարությունն ընդունում է Բեռլինի կապիտուլյացիան և հրաման է արձակում ռազմական գործողությունները դադարեցնելու մասին։

Երկրորդ։ Մնացած քաղաքացիական և զինվորական իշխանությունները պետք է բոլոր զինվորներին, սպաներին ու բնակչությանը հայտնեն, որ ռազմական ամբողջ գույքը, շենքերն ու կոմունալ կառուցվածքները, արժեքները պետք է լինեն կարգին. ոչինչ չպայթեցնել և չոչնչացնել, հատկապես ռազմական գույքը։

Երրորդ։ Դուք, պարոն Ֆրիչե, մեր սպայի հետ կգնաք ռադիոկայան՝ ելույթ ունենալու համար, ապա կվերադառնաք այստեղ։

Չորրորդ։ Ես մի անգամ ևս հաստատում եմ, որ մենք երաշխավորում ենք զինվորների, սպաների, գեներալների ու բնակչության կյանքը և հնարավորին չափ բժշկական օգնություն ցույց կտանք վիրավորներին։

Հինգերորդ։ Մենք պահանջում ենք, որ գերմանացիների կողմից պրովոկացիոն ոչ մի գործողություն, կրակոցներ կամ դիվերսիաներ չլինեն, այլապես մեր զորքերը ստիպված կլինեն ձեռնարկել պատասխան միջոցներ»։

Մտնում է գեներալ Վեյդլինգը՝ միջահասակ, նիհարակազմ ու ձիգ։ Ակնոց է կրում։ Ֆաշիստական ողջույնով ձեռքը մեկնում է առաջ։ Ստուգում եմ փաստաթղթերը. ամեն ինչ կարգին է։

Հարցնում եմ նրան.

— Դո՞ւք եք Բեռլինի կայազորի հրամանատարը։

— Այո՛։ Ես 56-րդ տանկային կորպուսի հրամանատարն եմ։

— Որտե՞ղ է Կրեբսը։ Ի՞նչ է ասել նա ձեզ։

— Ենթադրում եմ, որ նա ինքնասպան է եղել։ Կրեբսը, Գեբելսը և Բորմանը երեկ մերժեցին կապիտուլյացիան, բայց շուտով Կրեբսը անձամբ համոզվեց, որ շրջապատման օղակը շատ է սեղմվել և, հակառակ Գեբելսի ցանկության, վճռեց դադարեցնել անիմաստ արյունահեղությունը։ Կրկնում եմ, ես իմ կորպուսին հրաման տվեցի կապիտուլյացիայի մասին։

— Իսկ ամբողջ կայազո՞րը։ Ձեր իշխանությունը տարածվո՞ւմ է արդյոք նրա վրա։

— Երեկ երեկոյան ես բոլորին հրամայեցի պաշտպանվել, բայց... հետո տվեցի ուրիշ հրաման...

...Ցերեկվա ժամը 12-ն է։

Բեռլինի կայազորը, ինչպես նաև կայսերական դրասենյակը պաշտպանող ՍՍ զորքերը, անձնատուր եղան։ 8-րդ գվարդիական բանակի հրամանատարական կետում տեղի ունեցած բանակցություններն ավարտվեցին Բեռլինի կայազորի կապիտուլյացիայով։

Ընկերներիս հետ դուրս եկա փողոց։ Բեռլինի կառավարական շենքերի, ռայխստագի, կայսերական դրասենյակի վրա ծածանվում են կարմիր դրոշներ՝ Հաղթանակի դրոշները։ Շուրջը լռություն է՝ մեզ համար այնքան անսովոր լռություն։ Տիրգարտենի զբոսայգուց գալիս է 79-րդ գվարդիական դիվիզիայի վաշտը՝ գվարդիայի կապիտան Ն. Ի. Կրուշինինի հրամանատարությամբ։ Վաշտը հենց նոր ավարտել էր արևելյան բունկերի մաքրումը ֆաշիստներից։ Այնտեղ լսվեց վերջին կրակոցը Բեռլինում։ Հնչում է մեներգիչ զինվորի ձայնը և թևածում է համերաշխ երգը.

Խիզախ մարտի ելնենք
Հանուն սովետների...

Հաղթանակի բերկրանքն է շողում խիզախ գվարդիականների դեմքերին։

# ՓԱՌԱՊԱՆԾ ՀԱՂԹԱՆԱԿԸ

**Ն. Գ. ՍԱՖԱՐՅԱՆ**
**Պաշտոնաթող գեներալ-մայոր**

ԱՅԺՄ, ԵՐԲ ՆՍՏԱԾ ՍԵՂԱՆԻ ԱՌՋԵՎ այս տողերն եմ գրում, մի պահ վերհիշում եմ Հայրենական մեծ պատերազմի տագնապալի սկիզբը, երբ ես սահմանագլխում էի, հետո ֆաշիստական զավթիչների դեմ մեր զորքերի մղած համառ պաշտպանական մարտերը և, վերջապես, սրընթաց հարձակումը դեպի արևմուտք, Բեռլինի գրոհն ու պանծալի հաղթանակը Էլբայի ափին:

Հարձակվելով մեր երկրի վրա, հիտլերյան զավթիչները նպատակ ունեին «կայծակնային պատերազմով» մեկուկես-երկու ամսում հասնել Մոսկվա, գրավել մեր հայրենիքի մայրաքաղաքը, խորտակել աշխարհի առաջին սոցիալիստական պետությունը, բանվորների ու գյուղացիների իշխանությունը: Բայց ֆաշիստները սխալվեցին իրենց հաշիվներում:

Սոցիալիստական հայրենիքին սպառնացող վտանգի պահին կոմունիստական կուսակցությունը գոտեմարտի կոչեց մեր հզոր Սովետական Միության բոլոր ժողովուրդներին՝ ընդդեմ օտարերկրյա զավթիչների:

Մեծ Հայրենականի առաջին օրվանից նենգ ու դաժան թշնամու դեմ կողք-կողքի արիաբար մարտնչում էին Սովետական Միության բոլոր ժողովուրդների զավակները: Հերոսական սխրանքներով աչքի էին ընկնում նաև հայ ռազմիկները: Բրեստի ամրոցի պաշտպանության հերոսական օրերին կրակի ու բոցերի մեջ գնդի կոմիսար Է. Ֆոմինի, շտաբի պետի օգնական Ի. Զուբաչևի կողքին ֆաշիստների դեմ քաջաբար էին կռվում նաև հայ մարտիկներ Սոս Նուրիջանյանը, Վահան Գրիգորյանը, Ավետիք Սահակյանը և շատ ուրիշներ: Ֆաշիստական զավթիչների դեմ մղվող օդային մարտերում անօրինակ սխրանքներ էին գործում օդաչուներ Ն. Ստեփանյանը, Ս. Մկրտումյանը: Մոսկվայի համար մղված ճակատամարտում քաղղեկ Վ. Կլոչկովի պես աներեր էր քաղղեկի տեղակալ Ա. Պետրոսյանը: Կռվի հենց առաջին ամիսներին ֆաշիստական զավթիչների դեմ մղված մարտերում ցուցաբերած արիության ու խիզախության համար Լենինի շքանշանով պարգևատրվեցին ստորաբաժանումների հրամանատարներ Խ. Իվանյանն ու Ս. Ռաշոյանը:

1941 թ. վերջերին կազմավորվեցին ազգային դիվիզիաները: Այդ ժամանակ էլ ստեղծվեցին մի քանի հայկական զորամիավորումներ, որոնց անձնակազմի 70—80 տոկոսը հայեր էին: Դրանցից մեկը 89-րդ հրաձգային դիվիզիան էր:

Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման հիսնամյակի տոնակատարության ժամանակ արտասանած ճառում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը լեգենդար անվանեց հայկական 89-րդ Թամանյան դիվիզիան: Այդ բարձր գնահատականը փառք ու պատիվ է ոչ միայն դիվիզիայի ռազմիկներին, այլև հայ ժողովրդին: 1942 թ. վերջերին Անդրկովկասյան ռազմաճակատում այլ զորամիավորումների հետ հայկական 89-րդ դիվիզիան ավելի քան 70 օր



աներեր պաշտպանեց ռազմաճակատի իրեն վստահված հատվածը: Հայ ռազմիկները ոչ մի քայլ չնահանջեցին իրենց գրաված դիրքերից, համառորեն ետ մղելով ֆաշիստների բոլոր գրոհները:

1943 թ. փետրվարի 19-ին ինձ վստահեցին այդ դիվիզիայի հրամանատարությունը, փոխարինեցի մարտի դաշտում հերոսաբար զոհված գնդապետ Ա. Վասիլյանին:

Այդ օրերին էր, որ ստացվեց հայ ժողովրդի նամակը՝ ուղղված ռազմաճակատի հայ ռազմիկներին: Նամակում գրված էր. «...Հարյուրամյակներ շարունակ իր սուրը պատյան չի դրել մեր ժողովուրդը: Արյան ու հրդեհների ծովից է անցել, տանջանքների ահռելի լեռներ է խորտակել նա, մինչև որ հասել է երջանկության... Սովետական իշխանությունը տվեց մեզ ազատություն, խաղաղություն, պետականություն, որից զրկվել էինք դարեր շարունակ... Մենք երբեք չպետք է մոռանանք, որ միլիոնավոր հայերի ֆիզիկական բնաջնջումը խրախուսողները եղել են գերմանական արյունարբու իմպերիալիստները... Դեռևս հնչում է մեր ականջին հայ ժողովրդի խոշտանգված զավակների, մեր հայրերի ու մայրերի, մեր քույրերի ու եղբայրների, անմեղ մանուկների աղիողորմ կանչը, երբ ահա կրկին լկտի բարբարոսությամբ իրենց արյունոտ ճիրանները մեկնում են դեպի մեր երկիրը Վիլհելմի արյունախում հետնորդները, հիտլերականները... Արյունով ծածկված մեր հողը վրեժի է կանչում ձեզ: Վրե՜ժ, վրե՜ժ, վրեժ թափված յուրաքանչյուր կաթիլ արյան համար... Մեր ավագ եղբայր ռուս մեծ ժողովրդի, մեր եղբայրական ժողովուրդների զավակների հետ կողք-կողքի, ձեռք-ձեռքի մարտնչեցեք թշնամու դեմ... Նրան հետապնդեցեք մինչև իր տերիտորիան և հերոսի փառքով վերադարձեք հայրենի օջախ, ընտանյաց գիրկը...»:

Այդ նամակը, որ գրված էր հայ ժողովրդի սրտի ավյունով, հայ ռազմիկների մայրերի ու քույրերի, կանանց ու զավակների բուռն զգացմունքներով՝ անցավ ջոկից-ջոկ, դասակից-դասակ, վաշտից-վաշտ, խրամատից-խրամատ և հայ ռազմիկներին կոչեց վրեժի ու նորանոր սխրանքների:

Մեր դիվիզիան գործում էր 18-րդ բանակի կազմում, որի հրամանատարն էր գեներալ Կ. Լեսելիձեն, իսկ քաղբաժնի պետը՝ գնդապետ Լ. Բրեժնևը: Բանակի կազմում, 176-րդ, 318-րդ և վրացական 414-րդ և ուրիշ միավորումների հետ, մեր դիվիզիան սրընթաց առաջ էր շարժվում Թամանյան թերակղզով, ձգտում օր առաջ ազատագրել այն:

Քառասուներեք թվականի աշնանը մեր դիվիզիան գրոհում էր այդ թերակղզու Սախարնայա Գոլովկա բարձունքի ու Դոլգայա լեռան ուղղությամբ: Վերջինս գերմանացիների պաշտպանության «կապույտ գծի» իշխող բարձունքներից մեկն էր: Կապիտան Մ. Մուրադյանի (այժմ՝ գեներալ-մայոր) հրամանատարությամբ գործող գումարտակը, հաղթահարելով թշնամու բոլոր արգելքները, կրակի ու բոցերի միջով առաջ էր գնում սարն ի վեր, դեպի Դոլգայա լեռան գագաթը: Այդ արյունալի մարտում, իրեն անմահության փառքով պսակեց ավագ սերժանտ Հունան Ավետիսյանը: Զոհելով իր կյանքը, նա փրկեց տասնյակ զինվորների և հնարավորություն ընձեռեց գումարտակին հաջողությամբ կատարելու մարտական առաջադրանքը:

Հյուսիսային Կովկասի ռազմական խորհուրդը մեր դիվիզիայի հրամանատարության հասցեով ուղարկած հեռագրում, դիմելով մեր միավորման մարտիկներին, նշում էր. «...Հյուսիսային Կովկասի ռազմաճակատի զորքերի հաղթական շարքում 89-րդ հայկական հրաձգային դիվիզիան գրավեց իր արժանի տեղը և բոլոր զորքերի հետ արիաբար մարտեր է մղում ատելի թշնամու դեմ: Հիանալի առիթ է ստեղծվել ձեզ համար՝ հարձակվել ու ոչնչացնել թշնամուն և դրանով իսկ փառքով պսակել ձեր հարազատ հայկական դիվիզիան...»:

Մեր միավորումը, կրնկակոխ հետապնդելով հակառակորդի նահանջող զորամասերին, անթերի կատարելով իր մարտական առաջադրանքները, հոկտեմբերի 4-ին դուրս եկավ Պրիմորսկի բնակավայրը: Հինգ օր հետո մարտերն ավարտվեցին Թամանում: Գերագույն գլխավոր հրամանատարի հրամանով դիվիզիան անվանվեց Թամանյան:

Ազատագրելով Թամանյան թերակղզին, Հյուսիսային Կովկասի ռազմաճակատի, մասնավորապես 18-րդ բանակի (հետագայում՝ Մերձծովյան հատուկ բանակի) զորքերն իրենց ուժերն ուղղեցին Կերչ թերակղզում պատսպարված հիտլերյան զորամիավորումների դեմ: Մեր դիվիզիան ակտիվորեն մասնակցեց Ղրիմի ազատագրման համար մղված կռիվներին և Կերչ քաղաքի փողոցային մարտերում ցուցաբերած արիության համար պարգևատրվեց Կարմիր աստղի, իսկ Սևաստոպոլի ազատագրման համար՝ Կարմիր դրոշի շքանշաններով:

Հայրենի հողը ֆաշիստական զավթիչներից մաքրելուց հետո մեր դիվիզիան կռվեց Լեհաստանի ազատագրման համար, Օդերի վրայով հասավ Բեռլին և, պատերազմն ավարտելով Էլբայի ափին, արժանացավ Կուտուզովի երկրորդ աստիճանի շքանշանի: Հրամանատարության մարտական առաջադրանքներն անթերի կատարելու, մարտերում ցուցաբերած քաջության համար մոտ 8 հազար ռազմիկներ պարգևատրվեցին շքանշաններով ու մեդալներով, ինը զինվորի ու սպայի շնորհվեց Սովետական Միության հերոսի կոչում:

Օտարերկրյա զավթիչների դեմ մղված դաժան կռիվներում Սովետական Միությունը տվեց 20 մլն մարդկային զոհ: 89-րդ հայկական Թամանյան դիվիզիայից բազում ռազմիկներ նահատակվեցին մարտի դաշտում՝ հանուն մեր սոցիալիստական հայրենիքի ազատության ու անկախության: Մեր սրտի խորքում հավերժ է մնում Սեպուհ Խանջյանի, Սուրեն Բաղդասարյանի, Սուրեն Առաքելյանի, Ալեքսանդր Սաֆրոշկինի, Գրիգոր Զոհրաբյանի, Աշոտ Զաքարյանի և ուրիշների հիշատակը: Մի՞թե մենք կարող ենք մոռանալ աներեր սակրավոր, Սովետական Միության հերոս Ջահան Կարախանյանին, որը զոհվեց Կերչում: Կամ գնդի հրամանատարի տեղակալ Սամվել Խաչանյանին, որը միշտ սլանում էր գրոհողների առջևից և անձնական օրինակով սխրանքների կոչում իր ենթականերին: Նա մարտի դաշտում ընկավ հերոսի մահով:

Սուրեն Մարգարովը մեր դիվիզիան եկավ որպես դասակի հրամանատար, հետո նշանակվեց վաշտապետ, ապա գումարտակի հրամանատար: Բեռլինի մատույցներում նա ծանր վիրավորվեց: Երբ սանիտարները նրան պատգարակով դուրս էին բերում մարտի դաշտից, նա խնդրում է մի պահ վայր դնել պատգարակը, ապա բարձրացնում գլուխը, նայում շուրջն ու ասում.

— Ո՞ւր եք տանում ինձ դեպի թիկունք, չէ՞ որ ես կովկասյան նախալեռներից հասել եմ այստեղ, ես պետք է մտնեմ Բեռլին...

Նա պատգարակի վրա էլ մահացավ:

Օդերի Ֆրանկֆուրտը գրոհելիս 21 տեղից վիրավորվեց 528-րդ գնդի հրամանատարի քաղաքական գծով տեղակալ, մայոր Պապիկ Ավալյանը: Երբ ես սանիտարական գումարտակում այցելեցի նրան, նա մահամերձ վիճակում, հազիվ լսելի ինձ ասաց.

— Ընկեր գեներալ, ինչպե՞ս եմ կատարել իմ պարտքը հայրենիքի հանդեպ:

— Ազնվորեն, դրա համար շնորհակալություն եմ հայտնում,— ասացի ես:

Այսպես էին մարտնչում հիտլերականների դեմ թամանցիները:

Մեծ Հայրենականի հաղթական ավարտից հետո միավորման անձնակազմը Էլբայի ափից Հայաստանի աշխատավորությանն ուղարկած նամակ-զեկուցում գրեց.

«...Մեր թանկագին մայրեր ու հայրեր, կանայք ու երեխաներ, քույրեր ու եղբայրներ: Իրականացավ մեր երազանքը՝ հաղթանակի արևը շողշողում է մեր երկրի վրա...

...Մենք համատեղ ռազմական սխրագործություններով և մեր արդար գործի համար թափած արյունով ամրապնդեցինք սովետական ժողովուրդների մարտական բարեկամությունը, ճակատամարտերում պաշտպանեցինք մեր հայրենիքի պատիվն ու ազատությունը, մեր սովետական ժողովրդին վերադարձրինք խաղաղ կյանքի և ստեղծագործական աշխատանքի...

Հայ ժողովուրդը կարող է հպարտանալ, որ նրա զավակները Սովետական Միության եղբայրական բոլոր ժողովուրդների զավակների հետ... հաղթանակի դրոշը բարձրացրին Բեռլինի վրա... Մեզնից յուրաքանչյուրը գիտեր, որ



ճանապարհը դեպի մեր սքանչելի Երևան, դեպի Արարատյան դաշտավայր, դեպի Սևան, ձգված էր Բեռլինի վրայով...»:

Սովետական ժողովուրդը, նրա փառապանծ զինված ուժերը 1.418 օր ու գիշեր կենաց ու մահու պայքար մղեցին ոխերիմ թշնամու դեմ՝ մարտնչեցին ռազմաճակատում, աշխատանքային սխրանքներ գործեցին թիկունքում, կռեցին հաղթանակը: Ֆաշիստական Գերմանիայի դեմ տարած մեր հաղթանակը համոզիչ կերպով ապացուցեց աշխարհի առաջին սոցիալիստական պետության կենսունակությունն ու անխորտակելիությունը: Այդ հաղթանակի ոգեշնչողն ու կազմակերպիչը լենինյան կոմունիստական կուսակցությունն էր, մեր հասարակարգի ղեկավար և ուղղություն տվող ուժը:

Մեծ Հայրենականի հաղթական ավարտից անցել է երեսուն տարի: Բուժելով պատերազմի պատճառած վերքերը, սովետական ժողովուրդը, մեր կուսակցության, նրա Կենտկոմի, սովետական կառավարության վարած խաղաղասիրական քաղաքականության շնորհիվ, ակնառու հաջողությունների է հասել կոմունիստական շինարարության ասպարեզում: «Հայրենական մեծ պատերազմում տարած հաղթանակի 30-ամյակը,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան (1975 թ.) պլենումի որոշման մեջ,— սովետական ժողովուրդը դիմավորում է հիրավի պատմական նվաճումներով՝ կոմունիստական հասարակարգի կառուցման գործում և խաղաղության, դեմոկրատիայի ու ազատության այն իդեալների իրականացման պայքարում, որոնց համար ժողովուրդները կռվել են ֆաշիզմի և միլիտարիզմի դեմ»:

Մեր հարազատ կոմունիստական կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն և անձամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, մտահոգվելով երկրի էկոնոմիկայի առաջընթացով, ժողովրդի նյութական բարեկեցությունն էլ ավելի բարձրացնելու հարցերով, մեծ ուշադրություն են նվիրում նաև սոցիալիստական հայրենիքի պաշտպանական հզորության ամրապնդմանը, անում ամեն բան, որպեսզի հուսալիորեն պաշտպանվեն երկրի խաղաղ աշխատանքն ու անվտանգությունը:

Մեր փառապանծ հայրենիքի բազմազգ ժողովուրդները, ՍՍՀՄ զինված ուժերի մարտիկներն այսուհետև ևս իրենց ջանքերը կգործադրեն երկրի հզորությունն էլ ավելի ամրապնդելու, ամբողջ աշխարհում կայուն խաղաղություն ապահովելու համար:

յեմբերի 24-ին ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոն քննարկեց ՍՍՀՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 1941 թ. նոյեմբերի 17-ի որոշումը «Միջնակարգ ուսումնական հաստատությունների բարձր դասարանների աշակերտներին, բարձրագույն ուսումնական հաստատությունների ուսանողներին և քաղաքների ու շրջանային կենտրոնների ծառայողների մի մասին գյուղատնտեսական աշխատանքների ուսուցման մասին» և լուրջ խնդիրներ դրեց համապատասխան կազմակերպությունների առջև[1]: Այդ որոշման շնորհիվ 1942 թ. գյուղատնտեսական աշխատանքներին ակտիվ մասնակցություն ու օգնություն ցույց տվեցին քաղաքի աշխատավորությունը և սովորող երիտասարդությունը:

1942 թ. Հայաստանի գյուղատնտեսությունը, նախորդ տարվա համեմատությամբ, զարգանում էր ավելի արագ տեմպերով: Ժամկետից շուտ ավարտվեց բերքահավաքը, և Կովկասի համար ահեղ վտանգի այդ օրերին Հայաստանի գյուղատնտեսության աշխատողները պաշտպանության ֆոնդին լրացուցիչ հանձնեցին 84 հազար փութ հացահատիկ, կարտոֆիլ և գյուղատնտեսական այլ մթերքներ: «Հայաստանի կոլտնտեսական» տանկային շարասյուն կազմակերպելու համար հավաքվեց և պետական բանկ մուծվեց 38 մլն ռուբլի (տե՛ս Հ. Ե. Թումանյան, Հայաստանի սոցիալիստական էկոնոմիկայի զարգացումը, Երևան, 1962, էջ 176):

Գյուղի աշխատավորությունը ջերմորեն արձագանքեց Վաղարշապատի շրջանի «Անաստված» կոլտնտեսության աշխատողների նամակին՝ ուղղված անդրկովկասյան եղբայրական հանրապետությունների կոլտնտեսականներին: Նրանք պլանով սահմանված 670-ի փոխարեն խոստացան պետությանը հանձնել 700 տոննա խաղող՝ 30 հեկտարով ընդարձակել աշնանացանը, կոչ արեցին «...է՛լ ավելի անձնվեր աշխատանք ծավալել մեր կոլտնտեսային դաշտերում, է՛լ ավելի ուժեղացնել ռազմաճակատին ցույց տրվող օգնությունը...» («Սովետական Հայաստան», 30 օգոստոսի 1942 թ.):

Գյուղական աշխատավորության հերոսական, անձնվեր աշխատանքի շնորհիվ 1941—1945 թթ. Հայաստանի կոլտնտեսությունները ձեռք բերեցին նշանակալի հաջողություններ ինչպես հացահատիկային և տեխնիկական կուլտուրաների, այնպես էլ խաղողագործության ու պտղաբուծության ասպարեզում: Այդ տարիներին հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունն ընդարձակվեց 8,8, տեխնիկական կուլտուրաներինը՝ 3,4, կարտոֆիլինը՝ 38, խաղողինը՝ 18, պտղատու այգիներինը՝ 22 տոկոսով: Միաժամանակ, 1940 թ. համեմատությամբ, 1943 թ. բարձրացավ բերքատվությունը (հացահատիկինը՝ 10, կարտոֆիլինը՝ 27, բանջարեղենինը՝ 59 տոկոսով)[2]:

Այսպիսով, պատերազմի առաջին իսկ օրերից սկսած Հայաստանի կոմկուսակցությունը քաղաքական, գաղափարական և կազմակերպական մեծ աշխատանք տարավ հանրապետության ժողովրդական տնտեսությունը պատերազմական ժամանակի պահանջներին համապատասխան վերակառուցելու, ռազմական պատվերները և արտադրական պլանները ժամանակին կատարելու համար: Այդ ամենի շնորհիվ 1942 թ. վերջերին Հայաստանը դարձավ հերոսական սովետական բանակի զենքի մատակարար:

---

1. Տե՛ս ՄԼԻ հայկական ֆիլիալի կուսարխիվ, ֆ. 1, ց. 30, գ. 35, թ. 100:

2. Տե՛ս ՄԼԻ հայկական ֆիլիալի կուսարխիվ, ֆ. 1, ց. 33, գ. 53, թ. 9:

## ՀՈԴՎԱԾՆԵՐ

# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԴԵՐԸ ԱՐԴԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԵՋ

Բ. Ն. ՊՈՆՈՄԱՐՅՈՎ
ՍՄԿԿ Կենտկոմի Քաղբյուրոյի անդամության թեկնածու, Կենտկոմի քարտուղար

Գրեթե երեք տասնամյակ է անցել այն ժամանակից, երբ դադարեցին մարդկության ապրած բոլոր պատերազմներից ամենածանր՝ երկրորդ համաշխարհային պատերազմի վերջին համազարկերը: Դա մի զինված գոտեմարտ էր, որին մասնակցում էին սոցիալական տարբեր սիստեմների պատկանող պետություններ: Հասարակական նոր կարգը՝ սոցիալիզմը, հարկադրված եղավ իր ուժերը չափել համաշխարհային իմպերիալիզմի ամենարնտիր, մինչև ատամները զինված ջոկատների՝ ֆաշիստական Գերմանիայի ու նրա դաշնակիցների հետ: Եվ Վ. Ի. Լենինի ստեղծած պետությունը պատվով դիմացավ այդ ամենադժվարին փորձությանը: Քաղաքակրթությունը ֆաշիզմից փրկված լինելու համար պարտական է ամենից առաջ լենինյան կոմունիստական կուսակցության ղեկավարած սովետական ժողովրդի պայքարին:

Սովետական Միությունը, համաշխարհային կոմունիստական շարժումն անում էին ամեն բան, որպեսզի թույլ չտան բռնկելու երկրորդ համաշխարհային պատերազմ: Հենց կոմունիստներն էին, որ 30-ական թվականների կեսերին նախազգուշացրին մարդկությանը սպասվող վերահաս պատերազմական սարսափելի սպառնալիքի մասին: Կոմինտերնի VII կոնգրեսը բանվոր դասակարգին, դեմոկրատական բոլոր ուժերին կոչ էր անում համախմբվել ընդդեմ ֆաշիզմի ու պատերազմի: Դրա հետ մեկտեղ հատուկ բանաձևում նա բացահայտորեն հայտարարեց. «Իսկ համաշխարհային իմպերիալիստական նոր պատերազմ ծագելու դեպքում, հակառակ այն կանխելու համար բանվոր դասակարգի գործադրած բոլոր ջանքերին, կոմունիստները ձգտելու են պատերազմի հակառակորդներին, որոնք համախմբվել են խաղաղության համար մղվող պայքարում, կազմակերպված ոտքի հանել... ընդդեմ պատերազմի ֆաշիստական հրձիգների, ընդդեմ բուրժուազիայի, հանուն կապիտալիզմի տապալման» (Резолюции VII Всемирного конгресса Коммунистического Интернационала, Партиздат, 1935, стр. 39).

Կոմունիստական կուսակցությունները մշակել էին այնպիսի ստրատեգիա ու տակտիկա, որոնք նրանց հնարավորություն ընձեռեցին, երբ, այնուամենայնիվ, պատերազմը սանձազերծվել էր, «այդ պատերազմին վերջ դնել յուրովի, իրենց շահերի օգտին, ի շահ ամբողջ աշխատավոր մարդկության, դրանով իսկ ստեղծելով անհրաժեշտ նախադրյալներ՝ իմպերիալիստական պատե-

րագմներ ծնող արմատական պատճառները ոչնչացնելու համար»։ Այս խոսքերը Գ. Դիմիտրովը գրել էր երկրորդ համաշխարհային պատերազմի հենց սկզբին՝ 1939 թվականի սեպտեմբերին («Коммунистический Интернационал», № 8—9, 1939, стр. 36)։

Պատերազմի արդյունքներն ակնառու կերպով ապացուցեցին կոմունիստների իրավացիությունը։ Ֆաշիստական Գերմանիայի, իմպերիալիստական Ճապոնիայի և նրանց դաշնակիցների պարտությունը համապատասխանում էր ամբողջ առաջադեմ մարդկության շահերին, դեմոկրատիայի և սոցիալիզմի շահերին։ Բացվեց մի ամբողջ շարք հաղթական ժողովրդական հեղափոխությունների ուղի, որոնք կապիտալիստական կարգը ոչնչացրին Եվրոպայի ու Ասիայի ևս 11 երկրներում, իսկ ապա նաև Կուբայում։ Եվ դա եղավ իր նշանակությամբ երկրորդ իրադարձությունը համաշխարհային պատմության մեջ՝ Հոկտեմբերյան հեղափոխությունից հետո։ 30 տարի առաջ սոցիալիզմը դուրս եկավ մեկ երկրի շրջանակներից։ Հաստատվեց, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, «ահեղ ճշմարտությունը» իմպերիալիզմի նոր, ծանր պարտության մասին՝ նոր պատերազմի դեպքում, որն անխուսափելիորեն կհանգեցնի «սոցիալիզմի ընդլայնման» (տե՛ս Երկեր, հ. 33, էջ 43, հ. 27, էջ 525)։

— Սոցիալիստական կարգն ապացուցեց իր կենսունակությունն ու անխորտակելիությունը։ Սովետական Միությունը դարձավ համաշխարհային միտերություն, որի միջազգային հեղինակությունն ու դիրքերը այժմ արդեն ոչ ոք չէր կարող անտեսել։ Սոցիալիզմը դարձավ համաշխարհային սիստեմ, որն ընդգրկեց մի հսկայածավալ տարածք՝ Եվրոպայի կենտրոնից ու Ադրիատիկայի ափերից մինչև Հարավ-Արևելյան Ասիա։

— Համաշխարհային կապիտալիզմի դիրքերն էականորեն թուլացան։ Եվրոպայում նա պատերազմից դուրս եկավ մինչև իր հիմքերը խարխլված։ Նրա թե՛ տնտեսական և թե՛ գաղափարախոսական բոլոր հիմքերի անկայունությունը բնորոշ երևույթ էր ոչ միայն Արևելյան, այլև Արևմտյան Եվրոպայի երկրների մեծ մասում։ Դիմադրության հակաֆաշիստական շարժումը վերաճեց ամբողջ շահագործողական կարգի դեմ դասակարգային պայքարի մի աննախադեպ վերելքի։ Բազմաթիվ երկրների աշխատավորները հետպատերազմյան առաջին տարիներին ձեռք բերեցին սոցիալ-քաղաքական այնպիսի նվաճումներ, որպիսիք նրանք չէին կարող ստանալ նախընթաց դասակարգային համառ մարտերի շատ տասնամյակներում։ Ամենուրեք աճեց կոմունիստների՝ ֆաշիզմի դեմ պայքարող ամենահերոսական ու հետևողական մարտիկների ազդեցությունը։ Միջազգային կոմունիստական շարժումը հանդես եկավ որպես ամենահամախմբված ու բարձր գաղափարական ուժը, որը բոլոր ժողովուրդներին բերում էր իսկական խաղաղության և սոցիալական առաջընթացի հեռանկար։

— Կաշկանդելով և իր վրա գրավելով իմպերիալիզմի հիմնական ուժերը, սոցիալիստական սիստեմը չլատեց ուրիշ ժողովուրդներին սարկության մեջ պահելու նրա ընդունակությունը։ Այդ ժողովուրդների առջև արդեն կանգնած էր այնպիսի մի հակառակորդ, որին կարելի էր ստիպել նահանջել։ Թուլացավ իմպերիալիզմի հարձակողական թափը Ասիայում, Աֆրիկայում, Լատինական Ամերիկայում։ Բարձրացավ ազգային-ազատագրական շարժման հուժկու ալիքը։ Սկսվեց համաշխարհային գաղութային սիստեմի փլուզումը։ Այդ պրոցեսի հետևանքով աշխարհի քարտեզի վրա հայտնվեցին 80-ից ավելի նոր պետություններ, որոնցից շատերն արդեն այժմ էականորեն առաջ են շարժվել սոցիալական վերափոխումների ուղիով։ Ծնվեց մի նոր ուժ, որը համաշխարհային սոցիալիզմի հետ դաշինք կնքած՝ ունի հակաիմպերիալիստական հսկայական պոտենցիալ։

Խոշոր պլանով այսպիսիք են այդ ժամանակաշրջանի իմպերիալիզմի հարվածային ուժերի ջախջախման և համաշխարհային սոցիալիստական սիստեմի գոյավորման գլխավոր արդյունքները։ Դրանք ուսանելի դաս են իմպերիալիստական շրջաններում բոլոր նրանց, ովքեր չեն հրաժարվել սոցիալիզմի և կապիտալիզմի պատմական վեճը պատերազմի ուղիներում լուծելու մտադրություններից։



1

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի ծնունդը տեղի էր ունենում հեղափոխական ուժերի ընդհանուր հարձակման իրադրության մեջ, որն ընդգրկել էր աշխարհի նշանակալի մասը, և առաջին հերթին Եվրոպան։ Բանվոր դասակարգը, առաջադիմական մյուս ուժերը այդ ժամանակաշրջանում հասան նշանակալի հաջողությունների։ Հարավ-Արևելյան և Կենտրոնական Եվրոպայի երկրներում, Վիետնամում, Չինաստանում և Կորեայում աշխատավորների լայն միասնության բազայի վրա հաջողությամբ զարգանում էին ժողովրդադեմոկրատական հեղափոխությունները, որոնք հանգեցրին իմպերիալիզմի պարտությանը և ժողովրդական իշխանության հաստատմանը այդ երկրներում։ Անչափ մեծացան կոմկուսակցությունների թիվն ու նրանց հեղինակությունը մասսայական կազմակերպություններում։ Կոմունիստները մտան արևմտաեվրոպական ինն երկրների (Իտալիայի, Ֆրանսիայի, Բելգիայի, Դանիայի. Նորվեգիայի, Իսլանդիայի, Ավստրիայի, Ֆինլանդիայի, Լյուքսեմբուրգի) կառավարությունների մեջ։ Իտալիայում և Ֆրանսիայում ընդունվեցին դեմոկրատական սահմանադրություններ։ Ֆրանսիայում, Իտալիայում, Մեծ Բրիտանիայում, Ավստրիայում անցկացվեց արդյունաբերության մի շարք ճյուղերի ազգայնացում։ Բացվեց արմատական, իսկական դեմոկրատական վերափոխումների հեռանկար։

Այդ պայմաններում իմպերիալիզմն անցավ հակահարձակման, որի դասակարգային իմաստն այն էր, որ ժողովուրդներին, աշխատավորներին զրկեն ֆաշիզմի նկատմամբ տարած հաղթանակն իրենց, իսկական դեմոկրատիայի ու սոցիալական առաջընթացի շահերի համար օգտագործելու հնարավորությունից։ Այդ հակահարձակման ձևը «սառը պատերազմն» էր, որի օգնությամբ իմպերիալիստական տերությունները ցանկանում էին կապիտալիստական կարգերը պահպանել այնտեղ, ուր դրանք խարխլվել էին, վերականգնել այնտեղ, ուր դրանց մահացու հարված էր հասցվել։

Ամենից առաջ ամերիկյան իմպերիալիզմի միջամտությունն էր գլխավոր պատճառը, որ մի շարք երկրներում կանգ առան հեղափոխական պրոցեսները։ Ըստ էության տեղի էր ունենում թաքուն, իսկ առանձին դեպքերում, օրինակ՝ Հունաստանում, ուղղակի ռազմական ինտերվենցիա։ Բայց այն երկրներում, որոնք նույնպես դարձել էին զինված միջամտության օբյեկտ և որտեղ արդեն հաստատվել էր ժողովրդական իշխանություն—Վիետնամում և Կորեայում—ժողովուրդների քաջարի պայքարի շնորհիվ, Սովետական Միության, ամբողջ սոցիալիստական լագերի, աշխարհի դեմոկրատական ուժերի աջակցությամբ իմպերիալիստական ագրեսիան պարտություն կրեց, թեև իմպերիալիզմին հաջողվեց այդ պետություններից ժամանակավորապես պոկել նրանց տարածքի մի մասը։

Կենտրոնական և Հարավ-Արևելյան Եվրոպայում ու Ասիայի արևելքում իմպերիալիզմը չկարողացավ կանխել հեղափոխությունների հաղթանակը։ Նրա պլանների ձախողման գործում վճռական դեր կատարեց պրոլետարիատի դիկտատուրայի վերածումը միջազգային ուժի։

Ինչպես իր հաշիվներում սխալվել էր Հիտլերը, հույսը դնելով ագրեսիայի հարվածների տակ սովետական ժողովուրդներին տարանջատելու վրա, սխալվեցին նաև «սառը պատերազմի» կազմակերպիչները՝ սոցիալիզմի ուղին թևակոխած երկրները միմյանցից ու ՍՍՀՄ-ից մեկուսացնելու և նրանց մեկ առ մեկ իրենց ենթարկելու մտահղացումներում։ Համախմբվելով միասնական շարքերում, ՍՍՀՄ-ի, Լեհաստանի, Բուլղարիայի, Չեխոսլովակիայի, Հունգարիայի, Հարավսլավիայի, Ռումինիայի, Ալբանիայի ժողովուրդները, Արևելյան Գերմանիայի աշխատավորները վճռական հակահարված տվեցին իմպերիալիզմի փորձերին՝ զրկելու իրենց ֆաշիզմի նկատմամբ նվաճված հաղթանակի սոցիալական գլխավոր արդյունքից։ Եվ դա համաշխարհային-պատմական նշանակություն ունեցավ։ Սոցիալիզմը հնարավորություն ստացավ զարգանալու ոչ թե կապիտալիստական շրջապատման մեջ, ինչպես այդ պատերազմից առաջ

էր, այլ որպես միջազգային համագործակցություն, համաշխարհային նոր սիստեմ։

Միմյանց հետ սերտ փոխգործողության և ՍՍՀՄ-ի վրա հենվելու շնորհիվ, այն պետությունները, որոնք ծագել են ժողովրդական հեղափոխությունների վերաճած հակաֆաշիստական, ազատագրական շարժումից, դարձել են սոցիալիստական պետություններ։ Նրանց միավորված ջանքերը, Սովետական Միության հզորությունն ու հեղինակությունն ապահովեցին պատմական ամենադժվարին խնդրի լուծումը՝ թույլ չտալ, որ բանվոր դասակարգի, աշխատավորների՝ իշխանության գլուխ անցնելն ուղեկցվի նույնքան ծանր և հյուծիչ քաղաքացիական պատերազմով ու զինված ինտերվենցիայով, ինչպես այդ տեղի ունեցավ Սովետական Ռուսաստանում, երբ վերջինս միայնակ էր։

Ինտերնացիոնալ համագործակցության շրջանակներում, պաշտպանված լինելով իմպերիալիստական միջամտությունից, նրանք հնարավորություն ստացան նոր հասարակարգ կառուցելու երկարատև խաղաղության պայմաններում։

Այդ աննախընթաց եղբայրական համագործակցության շրջանակներում նրանց համար ավելի հեշտ էր հաղթահարել անցման շրջանի դժվարությունները, ժամանակին ստանալ հավատարիմ ու հուսալի բարեկամների տնտեսական և քաղաքական օգնությունն ու աջակցությունը։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորմամբ դրվեց նրա՝ արդի պատմության վճռական գործոնի վերածման սկիզբը։ Ինքը՝ սոցիալիզմը, շուտով հասավ պատմական այնպիսի բնագծերի, երբ նրա նվաճումները դարձան անդառնալի։ Սոցիալիստական համագործակցության ամեն մի երկրում վերացավ կապիտալիզմի ռեստավրացիայի վտանգը։ Այսպիսով, ամրապնդվեց Հոկտեմբերի և սոցիալիստական մյուս հեղափոխությունների հաղթանակը։

Բանվոր դասակարգի գործի համար մղվող պայքարի ընդհանուր ճակատից ժամանակավորապես Չինաստանի դուրս ընկնելը, միջազգային ասպարեզում սոցիալիզմին թշնամի ուժերի ուղղակի կամ անուղղակի պաշտպանությունը չինական ղեկավարության կողմից, իհարկե, ինչ-որ չափով խանգարեցին սոցիալիստական սիստեմին՝ հասնելու էլ ավելի նշանակալի հաջողությունների, պրոլետարական ինտերնացիոնալիզմին հավատարիմ երկրներից պահանջեցին լրացուցիչ ջանքեր։ Սակայն, հանգամանքների նման բերումով հանդերձ, իմպերիալիզմն ի վիճակի չեղավ խանգարել միջազգային սոցիալիզմին կատարելու իր պատմական միսիան։

ՍՄԿԿ-ն Չինաստանի նկատմամբ վարած իր քաղաքականության մեջ ելնում է այն բանից, որ օբյեկտիվ հիմք չկա չին ժողովրդի շահերը ռեալ սոցիալիզմի, կոմունիստական և ամբողջ հեղափոխական շարժման շահերին հակադրելու համար։ Ահա ինչու մեր կուսակցությունն այսուհետ ևս ղեկավարվելու է XXIV համագումարի դրույթներով, հավատացած լինելով, որ կգա մի ժամանակ, երբ Չինաստանը վերստին իր արժանի տեղը կգրավի իմպերիալիզմի դեմ, խաղաղության ու սոցիալական առաջընթացի համար պայքարող մարտիկների շարքերում։

Անցած ժամանակամիջոցում առանձնահատուկ ակներևությամբ դրսևորվեց խաղաղության, սոցիալիզմի և հեղափոխության պրոբլեմների կապի դիալեկտիկան։ Միջազգային ամբողջ իրադրության կարևորագույն գործոն հանդիսացավ հօգուտ սոցիալիզմի ուժերի հարաբերակցության փոփոխումը։ Խաղաղության ապահովումն օգնեց հեղափոխական հաջողությունների ամրապնդմանը և նպաստեց դրանց։ Իսկ հեղափոխական զարգացման յուրաքանչյուր քայլ ամրապնդում էր խաղաղության գործը։ Միջազգային խաղաղությունը հնարավորություն է տալիս հաջողությամբ իրականացնել սոցիալիզմի նպատակները, որոնք համապատասխանում են մարդկության ճնշող մեծամասնության շահերին։

Մյուս կողմից, իմպերիալիզմի լիդերները, նկատի ունենալով հրթիռա-միջուկային պատերազմի հետևանքներն ամենից առաջ նրանց համար, ովքեր կհանդգնեին սանձազերծել այն, չէին համարձակվում այդքան բացահայտորեն իրենց հույսերը դնել համաշխարհային ռազմական նոր կոնֆլիկտի վրա,



ինչպես այդ եղել է 30-ական թվականներին։ Բայց իմպերիալիզմը չի հրաժարվել ռազմական պլաններից։ Ագրեսիան մնում է նրա քաղաքականության զինանոցում։ Այստեղից էլ սպառազինությունների մրցավազքն ու պատերազմի նյութական նախապատրաստման մյուս միջոցառումները։

Սոցիալիզմի ու խաղաղության անխզելի կապը հասարակական նոր կարգի խոշորագույն հաղթանակն է։ Իսկ իմպերիալիզմի ու պատերազմի հարազատությունը հին կարգի աքիլլեսյան գարշապարն է։ Պատերազմի նախապատրաստման կուրսն իմպերիալիստներին հակադրեց ամբողջ խաղաղասեր մարդկությանը, հնարավորություն տալով ամբողջ աշխարհում հարյուր միլիոնավոր մարդկանց համախմբել իմպերիալիզմի գլոբալ ստրատեգիայի դեմ։

Եվ թեպետ «սառը պատերազմի» լայնորեն ծրագրված պլանը թանկ նստեց աշխարհի ժողովուրդների վրա, խլեց բազմաթիվ մարդկային զոհեր ու միլիարդների ռազմական ծախսեր, 70-ական թվականների սկզբին այն իրեն սկսեց սպառել։ Այդ ծրագրի հետագա իրականացման ճանապարհին, որը կարող էր աղետալի հետևանքներ բերել ամբողջ մարդկությանը, կանգնեց ամենից առաջ սոցիալիզմի միավորված հզորությունը։ Կոմունիստները, որոնք դեռ 40-ական թվականների վերջին նախազգուշացնում էին, թե «սառը պատերազմը», ինչպես և «տաքը», կարող է հանգեցնել իմպերիալիզմի պարտությանը, դարձյալ իրավացի դուրս եկան։

Համաշխարհային ասպարեզում «սառը պատերազմից» դեպի լարվածության թուլացումը կատարված շրջադարձի հզոր լծակ հանդիսացավ ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խաղաղության ծրագիրը։ Այն համաշխարհային ճանաչում գտավ որպես պատերազմի բոլոր հակառակորդների, պետությունների իրավահավասար, դեմոկրատական հարաբերությունների բոլոր կողմնակիցների ձգտումներն արտահայտող իսկական ժողովրդական ծրագիր։ Դրա հմուտ, հետևողական կենսագործումը մեր կուսակցության կողմից՝ եղբայրական կուսակցությունների և պետությունների սերտ փոխգործողությամբ, սոցիալիզմի ամրապնդման ու զարգացման, լենինյան արտաքին քաղաքականության իրականացման ուղղությամբ այն բացառիկ, համակողմանի ու անխոնջ աշխատանքը, որ ծավալել են ՍՄԿԿ Կենտկոմը, սովետական պետությունը, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, հնարավորություն ընձեռեցին լավագույն կերպով և կարճ ժամկետում օգտագործել սոցիալիզմի կուտակած նյութական ու քաղաքական հզորությունը՝ համաշխարհային ասպարեզում արմատական տեղաշարժերի համար։

Այսօր, նվաճված բարձունքից կարելի է ավելի լրիվ գնահատել սովետական ժողովրդի ինտերնացիոնալ սխրանքի պատմական նշանակությունը, ժողովուրդ, որը վճռական ավանդ ներդրեց համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցությունը սոցիալիզմի օգտին փոխելու գործում։ Սովետական ժողովուրդը, որն իր ուսերի վրա կրեց ֆաշիզմի դեմ մղված արյունահեղ պատերազմի հիմնական ծանրությունը, գիտակցորեն նշանակալի նյութական զոհողություններ կրեց, որպեսզի ամրապնդի սովետական պետության պաշտպանական հզորությունը, իմպերիալիզմը զրկի ռազմական գերազանցությունից։ Դա որոշակիորեն անդրադարձավ ժողովրդական բարեկեցության աճի տեմպերի վրա երկրում, որն առանց այդ էլ վիթխարի կորուստներ էր տվել պատերազմի տարիներին։ Բայց այդպիսին էր պատմական անողորմ անհրաժեշտությունը, որը թելադրված էր իմպերիալիզմի դեմ, խաղաղության ապահովման համար մղվող պայքարի տրամաբանությամբ։

Սոցիալական երկու սիստեմների լարված առճակատման ընթացքում, որը հետպատերազմյան երկարատև ժամանակաշրջանի բնորոշ գիծն էր, սոցիալիզմը դիմացավ, ամրապնդեց ու ընդլայնեց իր դիրքերը։ Հեռանկար բացվեց ոչ միայն կայուն և արդարացի խաղաղության համար, այլև սոցիալական առաջադիմության ուղիով ժողովուրդների հետագա առաջընթացի համար։

## 2

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի ձևավորման սկզբից անցած տարիներն ակնառու կերպով ցույց տվեցին, թե այդ սիստեմն ինչպիսի վիթ-

խարի, անգնահատելի նշանակություն ունի ամենից առաջ հենց իրենց՝ սոցիալիստական երկրների ժողովուրդների համար: Իսկ չէ՞ որ դրանք հարյուր միլիոնավոր մարդիկ են, եթե նույնիսկ վերցնելու լինենք այն երկրները, որոնք նախապատերազմյան ամբողջ ժամանակաշրջանում ակտիվորեն համագործակցել են միմյանց հետ և ընթացել միասին:

Սոցիալիստական երկրներն իրենց ժողովուրդների շահերի օգտին լուծել են այնպիսի պրոբլեմներ, որոնք անլուծելի են կապիտալիզմի օրոք: Վերացվել է մարդու շահագործումը մարդու կողմից, դասակարգային հակամարտության բուն պատճառը՝ արտադրամիջոցների մասնավոր սեփականությունը: Ի հակադրություն կապիտալիզմի՝ նրան հատուկ դասակարգային սուր պայքարով, սոցիալիստական հասարակությունը զարգանում է ավելի ու ավելի մեծ սոցիալական միատարրության ուղիով: Ընդսմին, ինչպես սոցիալիզմի հիմքերն ստեղծելու պրոցեսում, այնպես էլ զարգացած սոցիալիստական հասարակության անցնելիս, առաջատար դերը պատկանում է ամենաառաջավոր՝ բանվոր դասակարգին:

Նոր պետությունների մեծ մասում լուծվել է նաև այնպիսի մի դժվարին պրոբլեմ, ինչպիսին է գյուղացիության անցումը կոլեկտիվ տնտեսությանը: Առանձնապես կարևոր է, որ այդ բանը ձեռք է բերվել առանց արտադրության մակարդակն իջեցնելու: Սոցիալիստական վերափոխումների ընթացքում ամրապնդվեց բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, ձևավորվեց ամբողջ աշխատավոր ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը:

Եղբայրական երկրների փորձն ապացուցեց նաև, որ սոցիալիզմը միայն կարող է լուծել այնպիսի մի բարդ հարց, ինչպիսին է ազգային հարցը: Մինչև հեղափոխությունը Հարավ-Արևելյան Եվրոպան ազգային սուր թշնամանքի շրջաններից մեկն էր: Սոցիալիստական կարգը հնարավորություն ընձեռեց գտնել ազգային պրոբլեմների այնպիսի լուծում, որը կայուն հիմք է ծառայում սոցիալիստական համագործակցության ժողովուրդների բարեկամության ու եղբայրության համար: Ազգամիջյան թշնամանքի վերացումը, ժողովուրդների բարեկամության հաստատումն ու սոցիալիստական ազգերի ծաղկումն ունեն համաշխարհային-պատմական նշանակություն:

Այս ամենն այնպիսի նվաճումներ են, որոնք անհրաժեշտ է պահպանել ու զարգացնել:

Սոցիալիզմի՝ որպես միջազգային համագործակցության, գոյությունը սոցիալիստական հասարակության աճի ու զարգացման կարևորագույն գործոնների թիվն ավելացնում է եղբայրական փոխօգնությունը՝ պետական հունով, կուտակված փորձի ինտերնացիոնալացումը, սոցիալիստական տնտեսական ինտեգրացումը: Սոցիալիստական համագործակցությունը դրա համոզիչ ապացույցներ է տալիս: Այդ համագործակցության մեջ մտնող յուրաքանչյուր երկրի զարգացման տեմպերն ու մասշտաբներն այժմ որոշվում են ոչ միայն նրա ունեցած ռեսուրսներով: Նրանց վրա բարերար ազդեցություն են ունենում ամբողջ համագործակցության ընդհանուր հնարավորությունները: Իսկ սեփական հնարավորությունները երկրներից յուրաքանչյուրն այդ պայմաններում կարող է օգտագործել ավելի ռացիոնալ: Օրինակ, դժվար է գերագնահատել այն բանի նշանակությունը, որ ՏՓԽ-ի շրջանակներում բավականաչափ բնական հարստություններ չունեցող երկրները կարող են էներգիայի և հումքի իրենց մեծ պահանջմունքները բավարարել՝ առանց կախման մեջ ընկնելու կապիտալիզմից և նրան հատուկ տնտեսական ցնցումներից:

Համագործակցության շրջանակներում դրսևորվեց մի այնպիսի օրինաչափություն, ինչպիսին է տնտեսական մակարդակների հավասարեցումը: Վիթխարի նվաճում էր սոցիալիզմի շատ երկրների վերածումը բարձր զարգացած արդյունաբերական, իսկ ագրարայիններինը՝ ինդուստրիալ-ագրարային պետությունների:

Անցած ժամանակաշրջանում լիովին դրսևորվեց սոցիալիզմի կայունությունը ոչ միայն որպես հասարակական կարգ, այլև որպես միջազգային սիստեմ: Արդեն 25 տարի է, ինչ գործում է Տնտեսական փոխօգնության խորհուրդը՝ սոցիալիստական տիպի միջազգային տնտեսական կազմակերպությունը:



Երկու տասնամյակ է, որ գոյություն ունի Վարշավայի պայմանագրի կազմակերպությունը: Եղբայրական կուսակցությունների ղեկավարների բարձր մակարդակով կանոնավոր հանդիպումները, Քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի նստաշրջանները, միջկուսակցական և միջպետական սիստեմատիկ կոնտակտները, ամբողջությամբ վերցրած, կազմում են սոցիալիստական համագործակցության կյանքի ու գործունեության բոլոր բնագավառներում սերտ կոորդինացման ու համագործակցության հուսալիորեն գործող մեխանիզմ:

Արդեն ոչ թե մեկ երկրի, այլ իրենց ելակետային տվյալներով միմյանցից բավականին տարբեր մի քանի երկրների երեսնամյա պատմական ուղին հաստատեց սոցիալիստական հեղափոխության և սոցիալիզմի մոլիչ կերպով հաստատեց սոցիալիստական հեղափոխության և սոցիալիզմի կառուցման մարքս-լենինյան տեսության հիմնական հետևությունները, հարստացրեց գիտական կոմունիզմի գանձարանը, կոմունիստներին զինեց նոր փորձով, որը կենսական նշանակություն ունի նրանց պայքարի հաջողության համար՝ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարաշրջանի արդի էտապում: Այդ փորձը ցույց տվեց, թե որքան կարևոր ու անհրաժեշտ է կառավարող կուսակցությունների քաղաքականության մեջ առավելագույն չափով հաշվի առնել սոցիալիստական շինարարության ընդհանուր օրինաչափությունները, որոնք գործում են, առանց բացառության, սոցիալիզմի բոլոր երկրների համար՝ նրանց պատմական ու ազգային ողջ առանձնահատկություններով հանդերձ:

Համաշխարհային սոցիալիզմի առաջընթացը, առաջվա նման, մեծապես կախված է մարքս-լենինյան կուսակցությունների կողմից հասարակության ճիշտ ղեկավարումից: Նրանք ստիպված եղան հաղթահարել ոչ քիչ դժվարություններ, երբեմն ճաշակել նաև անհաջողությունների դառնությունը, որոնել պրոբլեմների լուծման նոր ուղիներ: Իրենց ժողովուրդների, ամբողջ հեղափոխական շարժման հանդեպ նրանց անմոռաց ծառայությունն այն էր, որ նրանք համարձակորեն ու ստեղծագործաբար լուծում էին նոր հասարակության կառուցման բարդ խնդիրները, հետևողական պայքար էին մղում սոցիալիզմի գործի համար վտանգավոր ամեն տեսակ տենդենցների դեմ իրենց երկրներում և համաշխարհային սոցիալիստական սիստեմում:

Այսօր սոցիալիզմը հանդես է գալիս որպես ամենաառաջավոր քաղաքակրթությունը, որն անսահման հեռանկարներ է բացում առաջընթացի համար:

Այս տեսակետից կարևոր է դիտել, թե համապատասխանաբար սոցիալիզմն ու կապիտալիզմը ինչպիսի «ցուցանիշներով» են դիմավորում 70-ական թվականների կեսերը:

Հասարակական զարգացման գլխավոր ու վճռական՝ նյութական արտադրության ոլորտում, հետպատերազմյան ժամանակաշրջանում խոշորագույն հիրավի, պատմական տեղաշարժ կատարվեց կապիտալիզմի և սոցիալիզմի տնտեսական պոտենցիալների հարաբերակցության մեջ: Այժմ սոցիալիստական աշխարհի արդյունաբերական արտադրությունը նախապատերազմյան ծավալը (Սովետական Միություն և Մոնղոլիա) գերազանցում է 32 անգամ, մինչդեռ կապիտալիստական աշխարհում՝ 4,9 անգամ: Համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ սոցիալիզմի բաժինը, որը պատերազմից առաջ հազիվ 10 տոկոս էր, բարձրացել է մինչև 39-ի:

Սոցիալիզմի տնտեսական հաջողությունների նշանակությունն առավել ևս մեծ է, քանի որ ՍՍՀՄ-ը և Արևելյան Եվրոպայի երկրների մեծ մասը պատերազմից դուրս էին եկել նյութական ու մարդկային անհամեմատ ավելի մեծ կորուստներով, քան կապիտալիստական աշխարհը: Իսկ կապիտալիստական գլխավոր երկիրը՝ ԱՄՆ-ը, առհասարակ չտուժեց պատերազմից: ԱՄՆ-ի տերիտորիայի վրա չի ընկել և ո՛չ մի ռումբ, չի ավերվել և ո՛չ մի գործարան: Ընդհակառակը, արդյունաբերությունն այնտեղ զգալիորեն աճեց պատերազմի ժամանակ: Իսկ սոցիալիստական երկրները պետք է շատ բան վերականգնեին և առավել շատ՝ նոր կառուցեին:

Սոցիալիզմն իր գերազանցությունն ապացուցում է նաև ժողովրդի բարեկեցության ապահովման բնագավառում: Սոցիալիստական երկրներում այն շարունակ աճում է: Այսպես, Սովետական Միությունում 1950-ից մինչև 1972

ղաքների արտաքին քաղաքական բարձր ակտիվությունը: Բոլոր նրանք, ովքեր ձգտում են իրական մասնակցություն ունենալ համաշխարհային քաղաքականությանը, աշխատում են կոնտակտներ հաստատել ու խորհրդակցել սովետական ղեկավարների, սոցիալիստական մյուս երկրների ղեկավարների հետ: Միջազգային վեճերի արձագանք են առաջացնում եղբայրական կուսակցությունների ու պետությունների ելույթներն ու արտասահմանյան ուղևորությունները:

Վերջին ժամանակաշրջանի համաշխարհային քաղաքականության մեջ խոշորագույն դեր է խաղում սոցիալիստական երկրների ղեկավարների և կապիտալիստական պետությունների առաջատար ներկայացուցիչների անմիջական կոնտակտների նոր ձևը: Այս բնագավառում մեր երկիրը հենվում է նաև պատմական ավանդույթի, մասնավորապես հակահիտլերյան կոալիցիայի փորձի վրա, որը սովորեցնում է, որ ստեղծված քաղաքական ռեալ իրավիճակների զգաստ գնահատումը մեզ հակադիր սոցիալական սիստեմի կառավարող շրջանների կողմից և ձեռք բերված պայմանավորվածությունների բարեխիղճ կենսագործումը հնարավորություն են տալիս գտնել ընդհանուր լեզու, հասնել կարևոր արդյունքների, որոնք ծառայում են խաղաղության գործին, համապատասխան պետությունների շահերին և ընդհանրապես միջազգային հարաբերությունների նորմալացմանը:

Այժմ հանրաճանաչ է, որ միջազգային զարգացման գլխավոր տենդենցն այն է, որ շրջադարձ է կատարվել դեպի լարվածության թուլացումը, դեպի խաղաղ գոյակցությունն ու ժողովուրդների անվտանգությունը: Եվ այն «վճռական գործոնը, որի վրա հիմնվում է այդ էվոլյուցիան, համաշխարհային սոցիալիստական սիստեմի գոյությունն է ու գործունեությունը» (1974 թ. հոկտեմբերին ՖԿԿ-ի համագումարում ընկ. Ժ. Մարշեի տված զեկուցումից: „L Humanitè", 25.X. 1974):

Կոմունիստների համար պարզ է, սակայն, որ խաղաղ գոյակցությունը չի վերացնում դարաշրջանի հիմնական հակասությունն իմպերիալիզմի ու սոցիալիզմի միջև: Տեղի է ունենում մի բարդ պրոցես, երբ տիրապետող բուրժուազիան աշխատում է հարմարվել սոցիալիզմի հետ հակամարտության նոր պայմաններին: Սոցիալիստական կարգը տապալելու կողմնորոշումը փոխարինվում է նրա աստիճանական թուլացման հանգամանորեն մշակված ստրատեգիայով: Իմպերիալիզմի ստրատեգները ձգտում են տարանջատել սոցիալիստական երկրները, նրանց հակադրել միմյանց, և ամենից առաջ Սովետական Միությանը: Նրանք խթանում են սպառազինությունների մրցավազքը, ուռճացնում ռազմական բյուջեները: Շարունակվում են համառ ջանքերն աշխուժացնելու և մոդեռնացնելու ՆԱՏՕ-ի ագրեսիվ բլոկը, որն օգտագործվում է նաև որպես հակահեղափոխությունն ու ռեակցիան արտահանելու անմիջական գործիք. այդ մասին են վկայում իրադարձությունները Չիլիում, Ուրուգվայում, Կիպրոսում և մի քանի այլ երկրներում:

Այս ամենը վկայում է, որ ձեռք բերված հաջողությունները ոչ մի հիմք չեն տալիս ինքնահանգստացման համար: Իմպերիալիզմը մնում է որպես վտանգավոր և ուժեղ հակառակորդ: Լարվածության թուլացման ամրապնդումն ու խորացումը պահանջում են նպատակամղված ու ակտիվ գործողություններ, ստեղծագործական քաղաքական աշխատանք, զգոնություն և ամենից առաջ անխոնջ հոգատարություն համաշխարհային սոցիալիզմի ամրապնդման նկատմամբ:

4

Անցած երեսնամյակի պատմական փորձի մեջ միանգամայն որոշակի ուրվագծվել են համաշխարհային հեղափոխական շարժման, մարդկային ամբողջ հասարակության առաջընթաց զարգացման վրա սոցիալիզմի բարեբար ներգործության հիմնական ուղղությունները: Ընդհանրացված դրանք հետևյալներն են.

— գնալով ավելի ու ավելի լրիվ է դրսևորվում հասարակական նոր կարգի անհաղթահարելի կենսական ուժը. արդեն երկրագնդի բնակչության բավական զգալի մասը ազատ է շահագործումից ու ճնշումից, ճաշակել է իրական հավասարության ու եղբայրության, դեմոկրատիայի, ազգային անկախության բարիքները. դրանով իսկ հաստատվում է սոցիալիստական հեռանկարը մյուս բոլոր ժողովուրդների համար, կուտակվում է պրակտիկ փորձ՝ կառուցելու այնպիսի հասարակարգ, որն ապագայից զուրկ կապիտալիզմի միակ հնարավոր ալտերնատիվն է.

— սոցիալիզմը միջազգային ասպարեզում ուժերի հարաբերակցությունը հօգուտ խաղաղության, ի շահ բոլոր ժողովուրդների ու սոցիալական առաջադիմության անշեղ փոփոխման գլխավոր գործոնն է.

— նոր հասարակության կառուցման գործում ձեռք բերված նվաճումները մեծացնում են սոցիալիզմի գաղափարների ձգողական ուժը, նպաստում դրանց ավելի ու ավելի լայն տարածմանը, խարխլում են հակակոմունիստական նախապաշարմունքները, բուրժուական գաղափարախոսությունը.

— իրական սոցիալիզմը ցուցադրում է ժողովուրդների բարեկամության և եղբայրության հիմքերի վրա կառուցված նոր, իսկական ինտերնացիոնալիստական միջպետական հարաբերությունների գերազանցությունը.

— Այն կոնստրուկտիվ ներգործություն է ունենում միջազգային հարաբերությունների ամբողջ սիստեմի վրա, նպաստելով խաղաղության ու ժողովուրդների անվտանգության ամրապնդմանը, բանակցությունների միջոցով բոլոր վիճելի հարցերի լուծմանը.

— այն բարենպաստ է ազդում կապիտալի երկրներում դասակարգային պայքարի արտաքին, ինչպես նաև անուղղակիորեն ներքաղաքական պայմանների վրա.

— ազգային ազատությունն ու անկախությունը պաշտպանող ժողովուրդների, գաղութատիրությունից ազատագրված և ինքնուրույն զարգացման ուղին թևակոխած պետությունների համակողմանի պաշտպանությամբ իրական սոցիալիզմն օգնում է նորանոր հարյուր միլիոնավոր մարդկանց՝ մասնակցելու մեծ Հոկտեմբերի բացած դարաշրջանի պատմական ակտիվ ստեղծագործությանը:

Սոցիալիզմի բարեբար ազդեցությունը համաշխարհային զարգացման վրա այսօր արդեն պարզապես առաջավոր գաղափար կամ տեսական մտահանգում չէ, այլ կենդանի իրականություն, համաշխարհային պատմության ընթացքը սահմանող կարևորագույն օբյեկտիվ գործոններից մեկը:

Երեսնամյա փորձը համոզիչ ցույց տվեց, որ համաշխարհային սոցիալիզմի շահերը, նրա ամրապնդման, ազդեցության աճի շահերը, լիովին համընկնում են ամբողջ աշխատավոր մարդկության խոր պահանջմունքների և կենսական կարիքների հետ: Եվ, իրոք, մի՞թե բոլոր երկրների աշխատանքի մարդիկ շահագրգռված չեն, որ ավելի հեռանա հրթիռա-միջուկային պատերազմի սպառնալիքը, որ ավելի ու ավելի ամրապնդվեն միջազգային անվտանգության հիմքերը:

Հետպատերազմյան երեսնամյակի փորձը ցույց է տալիս, որ իմպերիալիզմի սանձազերծած պատերազմները վերացվել են ամենից առաջ սոցիալիզմի երկրների ջանքերի, նրանց ակտիվության ու հետևողականության շնորհիվ: Եվ այդ պատերազմները վերացվել են, միշտ լիովին պահպանելով շահագրգռված երկրների ու ժողովուրդների շահերը: Աշխարհի ժողովուրդները գնալով ավելի շատ են հաշիվ տալիս իրենց, որ եթե սոցիալիզմն ամրապնդվելու է այսուհետև ևս, դա նշանակում է, որ իրենք դրանից կստանան քաղաքական, բարոյական, ինչպես նաև նյութական առավել մեծ աջակցություն: Եթե աճելու է սոցիալիզմի ներգործությունն իրադարձությունների ընթացքի վրա, ապա դա նշանակում է, որ համապատասխանաբար կկրճատվեն իմպերիալիզմի ու ռեակցիայի ուժերի հնարավորությունները, իսկ խաղաղության, ազգային անկախության և սոցիալական առաջադիմության ուժերի հնարավորությունները կաճեն:

Հետևաբար, բոլոր երկրների բանվոր դասակարգը, գյուղացիությունը, մյուս ոչ պրոլետարական աշխատավորական խավերը խորապես շահագրգռված են, որ համաշխարհային սոցիալիզմն ամրապնդվի, որ աճի նրա ազդեցությունն իրադարձությունների ընթացքի վրա:

Իհարկե, պետք է տեսնել, որ համաշխարհային սոցիալիզմի և բոլոր երկրների ժողովուրդների շահերի փոխադարձ սերտ կապը դեռևս բոլորը չէ, որ հասկանում են։ Իմպերիալիզմը, նրա գաղափարախոսները, ինչպես նաև ամեն կարգի ռևիզիոնիստներն անում են ամեն բան, որպեսզի սքողեն այդ փոխադարձ կապը, սեպ խրեն սոցիալիզմի և հեղափոխական ուժերի մյուս ջոկատների միջև։ Բայց, հակառակ նրանց ճիգերին, աճում է սոցիալիզմի և բոլոր աշխատավորների շահերի ընդհանրության գիտակցումը մասսաների կողմից, ավելի ու ավելի է խորանում դրա ըմբռնումը։

Իրադարձությունների օբյեկտիվ ընթացքը և՛ սոցիալիզմի երկրներում, և՛ ամբողջ մնացած աշխարհում հնարավորություն է տալիս հետևություն անել համաշխարհային զարգացման վրա սոցիալիզմի ներգործության անշեղ աճի մասին։

Մի կողմից, մեծանում են այդ ներգործության հնարավորությունները, որոնք կապված են սոցիալիստական համագործակցության տնտեսական և գաղափարա-քաղաքական հզորության աճի հետ։ Դրանում միավորված երկրները թևակոխել են զարգացման մի նոր փուլ, հասել են որակապես նոր նվաճումների՝ կոմունիստական շինարարության և զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցման գործում։ Երեք տասնամյակում պայմաններ են ստեղծվել սոցիալիզմի առավելությունների ավելի լրիվ և համակողմանի պրակտիկ իրագործման, իսկ հետևաբար և նրա օրինակի ուժը բազմապատկելու համար։ Արդի աշխարհում սոցիալիզմի դերի ուժեղացմանը, անկասկած, նպաստելու է նաև այն, որ եղբայրական կուսակցությունների ու պետությունների համագործակցությունը ևս շարունակում է կատարելագործվել։

Մյուս կողմից, սոցիալիզմի ազդեցության աճին օբյեկտիվորեն նպաստելու են սոցիալիստական աշխարհի սահմաններից դուրս տեղի ունեցող պրոցեսները։ Կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի խիստ սրման հետևանքով բնակչության ավելի ու ավելի մեծ մասսան կորցնում է հավատը կապիտալիստական կարգի շրջանակներում դժվարին ու երկարատև պայքարում նվաճված կենսամակարդակը պահպանելու, գործազրկությունից, մոնոպոլիաների տիրապետության հետևանքով ծնվող մյուս աղետներից փրկվելու հնարավորության նկատմամբ։

«Երրորդ աշխարհի» երկրներում տեղի ունեցող պրոցեսները նրանց մղում են պրոբլեմների սոցիալիստական լուծման ավելի ու ավելի համառ որոնումների։ Կյանքն ինքը ցույց է տալիս, որ սոցիալիզմի ուղիով ընթացող զարգացումը լայն հնարավորություններ է ստեղծում գաղութային ժառանգության վերացման հետ կապված հսկայական դժվարությունները հաղթահարելու համար։ Հայտնի է նաև, որ հակաիմպերիալիստական շարժումն աշխարհի այդ գոտու շատ երկրներում ավելի ու ավելի որոշակիորեն վերաճում է պայքարի՝ ընդդեմ ամեն տեսակ շահագործման։ Դա, իհարկե, պայմանավորված է իրենց՝ ազատագրված երկրների զարգացման աճող պահանջներով։ Բայց այդ պրոցեսում հսկայական նշանակություն է ունենալու նաև համաշխարհային սոցիալիզմի գաղափարական ներգործությունը, որն ակնառու ցուցադրում է կապիտալիստական հասարակարգում անլուծելի պրոբլեմները հաջողությամբ լուծելու ունակությունը։ Իսկ այդ երկրների և խոր ճգնաժամ ապրող համաշխարհային կապիտալիստական տնտեսության միջև դեռևս պահպանվող կապը, նեոգաղութատիրությունն ու բազմազգ կորպորացիաների անգութ շահագործումը նույնպես ուժեղացնելու են հակակապիտալիստական տրամադրությունները, իրական սոցիալիզմի հետ համագործակցության ձգտումը։

Հարաճուն ուժով սոցիալիզմի օգտին են գործում նաև այն պրոցեսները, որոնք կապված են գիտատեխնիկական հեղափոխության հետ, գլոբալ բնույթի այնպիսի պրոբլեմների սրման հետ, ինչպիսիք են էներգետիկ, պարենային, էկոլոգիական պրոբլեմները։ Միայն սոցիալիզմն ու նրա ծնած միջազգային հաղորդակցման սկզբունքները կարող են ապահովել XX դարի խոշորագույն պրոբլեմների իրական լուծումը, ժողովուրդներին ու պետություններին տալ գիտատեխնիկական, տնտեսական և կուլտուրական համագործակցության



այն նոր, ավելի բարձր մակարդակը, որի անհրաժեշտությունը թելադրվում է ներկայի և ապագայի արտադրաուժերի բնույթով ու հզորությամբ։

Այսպիսով, արդի համաշխարհային զարգացման որ կողմն էլ որ վերցնենք, ամենուրեք օբյեկտիվ գործոնները հանգեցնում են համաշխարհային առաջընթացի ավանգարդային ուժի՝ սոցիալիզմի դերի ուժեղացմանը։

Բայց կոմունիստները, ինչպես հայտնի է, երբեք օբյեկտիվ հնարավորությունների ավտոմատիկ իրականացման տեսության կողմնակիցներ չեն եղել. նրանց խորթ է «ինքնահոսի» դիրքորոշումը։ Նրանք ելնում են այն բանից, որ սոցիալիզմի վիթխարի պոտենցիալը, պատմության կողմից նրան հատկացված դերն առավել լրիվ ու համակողմանի իրականացվում են կոմկուսակցությունների ճիշտ քաղաքականության, մարքսիզմ-լենինիզմի հիմքի վրա նրանց միասնության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի շնորհիվ։ Արդեն երկարատև փորձի հիման վրա կարելի է պնդել, որ, եթե սոցիալիստական երկրների մեծ մասը միասնական չլիներ և անհամաձայնություն լիներ նրանց մեջ, եթե շարունակ չամրապնդվեր սոցիալիստական համագործակցությունը, համաշխարհային սոցիալիզմը ոչ միայն չէր կարող դառնալ այնպիսի մի գործոն, որն այժմ ավելի ու ավելի շատ է կանխորոշում համաշխարհային զարգացումը, այլև սոցիալիստական երկրներն ստիպված պիտի լինեին հատուցել, Կ. Մարքսի խոսքերով ասած, «իրենց ցրված ջանքերի ընդհանուր պարտությամբ»։ Եվ դա թանկ էր նստելու աշխարհի բոլոր ժողովուրդներին։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի համախմբվածության ու նրա համակողմանի զարգացման համար մղվող պայքարը կարևորագույն ինտերնացիոնալ խնդիր է։ ՍՄԿԿ-ի դիրքը այդ հարցում պարզորոշ ձևակերպել է ընկ. Լ. Ի. Բրեժնևը։ «Միասնությունը, համագործակցությունը, համատեղ գործողությունները,— ընդգծել է նա,— մեզ այժմ հարկավոր են նախ և առաջ նրա համար, որ ավելի արագ և արդյունավետ լուծենք սոցիալիստական հասարակության զարգացման ու կոմունիզմի կառուցման խնդիրները։ Միասնությունը, համախմբվածությունը, համագործակցությունը մեզ հարկավոր են նաև այն բանի համար, որ որքան կարելի է հաջողությամբ պաշտպանենք ու ամրապնդենք բոլոր ժողովուրդների համար այնքան անհրաժեշտ խաղաղությունը, ամրապնդենք միջազգային լարվածության թուլացումը, գործուն հակահարված հասցնենք իմպերիալիզմի ամեն տեսակ ագրեսիվ գործողություններին, սոցիալիզմի շահերը ոտնահարելու ամեն տեսակ փորձերին» (Լ. Ի. Բրեժնև։ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հիսնամյակի մասին։ Ե., 1973, էջ 44)։

Սովետական կոմունիստները վստահ են նայում ապագային։ Նրանք համոզված են, որ օբյեկտիվ գործոնների գործողությունը և դրան բազմապատկած կոմունիստական կուսակցությունների քաղաքական նախաձեռնությունը, մարքս-լենինյան կուրսը, կապահովի իրական սոցիալիզմի վիթխարի հնարավորությունների կենսագործումը՝ ի շահ խաղաղության և ժողովուրդների ազատության, հանուն կոմունիզմի ազնիվ իդեալների։

«Проблемы мира и социализма» 1975, № 1.

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ ԻՍԿԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԲՆՈՒՅԹԸ

**Ա. Զ. ԹԱՌՈՅԱՆ**
**Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության մշտական հանձնաժողովների աշխատանքի բաժնի վարիչ**

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ վերելքի պայմաններում մեծ խանդավառությամբ պատրաստվում է միութենական ու ինքնավար հանրապետությունների գերագույն սովետների և աշխատավորների դեպուտատների տեղական սովետների ընտրություններին, որոնք տեղի կունենան 1975 թվականի հունիսի 15-ին:*

*Կոմունիստական շինարարության վիթխարի խնդիրների հաջող կենսագործման համաժողովրդական պայքարում կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացմանը, պետության կառավարման գործում ժողովրդական լայն մասսաների ներգրավմանը: Նա անշեղորեն վարում է սոցիալիստական դեմոկրատիայի հետագա կատարելագործման՝ ՍՄԿԿ XXIV համագումարի սահմանած կուրսը, «ձգտելով հասնել մասսաների ստեղծագործական եռանդի լրիվ մոբիլիզացմանը, ինչպես պետական մարմինների միջոցով, այնպես էլ մասսայական հասարակական կազմակերպությունների լայն ցանցի միջոցով հասարակության կառավարման բազմազան ձևերի առավելագույն հարստացմանը» (Լ. Ի. Բրեժնև,* Լենինյան կուրսով, *հ. 4, էջ 613):*

*Սոցիալիստական դեմոկրատիայի անշեղ զարգացումն ու կատարելագործումը մեր հասարակության բուն էությունից բխող, նրա առաջընթացով պայմանավորված օբյեկտիվ պրոցես է: Որքան մեծանում են կոմունիստական շինարարության խնդիրները, այնքան ավելի անհրաժեշտ են դառնում պետական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության կառավարման գործում ժողովրդական լայն զանգվածների ներգրավումը, սոցիալիստական դեմոկրատիայի ըստ ամենայնի զարգացումը: Այդ օրինաչափությունը, որը հաստատվում է Սովետական Միության և եղբայրական սոցիալիստական երկրների պատմական փորձով, միանգամայն հասկանալի է, որովհետև նոր հասարակարգի՝ կոմունիզմի կառուցումը համաժողովրդական ստեղծագործական շարժում է, իսկ աշխատավորության լայն դեմոկրատական իրավունքների ապահովումը՝ այդ շարժմանը միլիոնների գիտակցական ակտիվ մասնակցության հիմնական պայմաններից մեկը: Կոմունիզմի կառուցման պայքարը, ընդգծված է ՍՄԿԿ XXIV համագումարի բանաձևում, անբաժանելի է սոցիալիստական դեմոկրատիայի բազմակողմանի զարգացումից, սովետական պետության ամրապնդումից, հասարակության քաղաքական կազմակերպության ողջ սիստեմի կատարելագործումից (տե՛ս ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 268):*

*Սոցիալիստական դեմոկրատիան քաղաքական, տնտեսական և իրավական երաշխիքներով պահպանում է հասարակության բոլոր անդամների իրավունքներն ու ազատությունը, ապահովում դրանց լիակատար իրագործումը պետական, քաղաքական, տնտեսական և սոցիալ-կուլտուրական կյանքի բո-*



*լոր ոլորտներում: Դրա փայլուն ապացույցն է կոմունիստական կուսակցության, սովետների, արհմիությունների, կոմերիտմիության, ժողովրդական վերահսկողության մարմինների, զանազան միությունների, ընկերությունների և կազմակերպությունների գործունեությունը. դրանց միջոցով է, որ երկրի աշխատավորներն ընդգրկվում են հասարակական կյանքում, պետության կառավարման գործում:*

*Զուգակցելով պետական ու հասարակական կազմակերպությունների բնորոշ առանձնահատկությունները, սովետներն առավել համակողմանի են դրսևորում համաժողովրդական պետության դեմոկրատական բնույթը: Վարից վեր կազմված լինելով ժողովրդի ներկայացուցիչներից, դրանք արտահայտում են աշխատավորների կամքը, ապահովում են միլիոնավոր մարդկանց ակտիվ մասնակցությունը պետության կառավարմանը, գործիմացորեն քննարկում և լուծում սոցիալիստական հասարակության զարգացման կարևորագույն հարցերը:*

*Սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման նոր քայլ էր դեպուտատների ստատուսի մասին ՍՍՀՄ ութերորդ գումարման Գերագույն սովետի չորրորդ սեսիայում ընդունված օրենքը, որը ժողովրդի ներկայացուցչական մարմինների դերի և ակտիվության բարձրացման ոլորտում կուսակցության քաղաքականության հետևողական իրականացման վառ արտահայտությունն է: Նրանում սահմանված են բոլոր սովետների դեպուտատների գործունեության հիմնական սկզբունքները և կառավարման մարմինների ու պաշտոնատար անձանց պարտականությունները դեպուտատների նկատմամբ:*

*Բարձրացնելով պետական իշխանության ներկայացուցչական մարմինների դերը հասարակական կյանքի բոլոր ասպարեզներում և զարգացնելով նրանց գործունեության դեմոկրատական սկզբունքները, կուսակցությունը հոգ է տանում, որպեսզի սովետներն ու նրանց դեպուտատները առավել լրիվ օգտագործեն իրենց լիազորությունները, ներազդեն ժողովրդական տնտեսության զարգացման, արտադրության արդյունավետության բարձրացման, արտադրանքի որակի բարելավման, արտադրության ռեզերվների գործադրման և գիտատեխնիկական առաջընթացի արագացման վրա, ավելի հաստատակամորեն զբաղվեն բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման, հասարակական կարգի պահպանման, քաղաքների, գյուղերի և ավանների բարեկարգման հարցերով:*

*Պետական իշխանության ներկայացուցչական մարմիններն այժմ ավելի հետևողականորեն են իրագործում իրենց գործունեության այնպիսի դեմոկրատական ձևերը, ինչպիսիք են ընտրողների առջև դեպուտատների, սովետների առջև գործադիր կոմիտեների, նրանց բաժինների ու վարչությունների սիստեմատիկ հաշվետվությունները: 1974 թ. նման հաշվետվություններով հանդես է եկել հանրապետության շրջանային, քաղաքային, գյուղական և ավանային սովետների դեպուտատների 99,1, սովետների գործադիր մարմինների 92 տոկոսը: Տեղական սովետների դեպուտատների, գործադիր կոմիտեների, նրանց բաժինների ու վարչությունների հաշվետվությունները լսել են հանրապետության բնակչության ավելի քան 59,2 տոկոսը կամ ընտրական իրավունքի հասակ ունեցող գրեթե բոլոր քաղաքացիները: Դա բնակչությանը սովետների գործունեության մեջ ներգրավելու վերաբերյալ լենինյան գաղափարների իրականացման ցայտուն արտահայտություններից մեկն է:*

*ՍՈՎԵՏՆԵՐԻ ԴԵՐԻ ԵՎ ԱԿՏԻՎՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ, նրանց գործունեության դեմոկրատական սկզբունքների զարգացման արդյունքներն ամենայն հստակությամբ դրսևորվում են ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումների կենսագործման համար մղվող համաժողովրդական պայքարում: Իրականացնելով կուսակցության կանխագծումները, սովետների երկրի աշխատավորները հնգամյակի որոշիչ՝ չորրորդ տարին փակեցին ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում ձեռք բերած նվաճումներով: 1974 թ. Սովետական Միությունում արդյունաբերության արտադրանքը, նախորդ տարվա համեմատությամբ, ավելացավ 8 տոկոսով՝ պլանով նախատեսված 6,8-ի փոխարեն:*

Արդյունաբերական արտադրանքի աճի 84 տոկոսն ստացվեց աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Մեծ են հաջողությունները նաև գյուղատնտեսության զարգացման բնագավառում։ 1974 թ. գյուղի աշխատավորները, չնայած կլիմայական անբարենպաստ պայմաններին, հավաքեցին 195,6 մլն տոննա հացահատիկ, 8,41 մլն տոննա բամբակ՝ զգալիորեն գերազանցելով հնգամյակի նախորդ տարիների միջին տարեկան բերքը։

Էկոնոմիկայի հզոր վերելքի հիման վրա հետևողականորեն կենսագործվում են ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման՝ ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներով նախատեսված միջոցառումները։ Անցած չորս տարիներին բարձրացել է 47 մլն մարդու (բանվորների ու ծառայողների համարյա կեսի) աշխատավարձը։ Միայն 1974 թ. բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտներն աճել են 4,2 տոկոսով, բանվորների և ծառայողների միջին ամսական աշխատավարձն ավելացել է 4,3, կոլտնտեսականներինը՝ 5 տոկոսով։

Սոցիալիստական հայրենիքի տնտեսական հզորության ամրապնդման գործում իրենց ներդրումն ունեն նաև Սովետական Հայաստանի աշխատավորները։ Հնգամյակի անցած չորս տարիներին հանրապետության ազգային եկամուտն աճել է 33 տոկոսով, պլանով նախատեսված 32,5-ի դիմաց, հիմնական արտադրական ֆոնդերն ավելացել են 43 տոկոսով։ Միայն 1974 թ. հանրապետության ազգային եկամտի աճը կազմեց 9 տոկոս, արդյունաբերական արտադրանքինը՝ 10,4, հիմնական ֆոնդերի գործարկմանը՝ 10, կապիտալ ներդրումներինը՝ 7 տոկոս։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքի ծավալը, 1971—1973 թթ. միջին տարեկան արտադրանքի ծավալի համեմատությամբ, ավելացավ 5 տոկոսով։

Հնգամյակի յուրաքանչյուր տարին նշանավորվում է սովետական մարդկանց հերոսական նոր գործերով։ Ներկայումս մեր երկրի բոլոր աշխատավորները սոցիալիստական լայն մրցություն են ծավալել հնգամյակի եզրափակիչ տարվա պլանային առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու համար։ Այդ համաժողովրդական պայքարի առաջին շարքում են ժողովրդի ավելի քան 2,2 մլն լիազոր-ներկայացուցիչները՝ սովետների դեպուտատները և դրանց աջակցող միլիոնավոր ակտիվիստները, մեր երկրի բոլոր ազգերի արժանավոր որդիներն ու դուստրերը։ Մ. Ի. Կալինինի խոսքերով ասած՝ հենց դեպուտատների թիվը վկայում է, որ սովետական իշխանությունը դեպուտատների միջոցով կարող է անցկացնել և անցկացնում է, հիրավի, վիթխարի միջոցառումներ, որովհետև այդ ակտիվը սերտորեն կապված է ժողովրդի հետ, արտահայտում է նրա կամքը և ընդգրկում երկրի ողջ բնակչությունը։

Խորամուխ լինելով արդյունաբերության և տրանսպորտի աշխատանքում, գյուղատնտեսության, ժողովրդական կրթության, առողջապահության, բնակարանային ու կոմունալ-կենցաղային շինարարության, քաղաքների, գյուղերի բարեկարգման ու կառուցապատման հարցերում, դեպուտատներն օգնում են տեղական կուսակցական, սովետական մարմիններին և աշխատավորներին՝ հաջողությամբ լուծելու ժողովրդատնտեսական խնդիրները։

Դեպուտատները մրցության առաջամարտիկներ են, նորարարներ, աշխատանքի առաջավոր մեթոդների կիրառողներ, գիտության և կուլտուրայի ականավոր գործիչներ։ Նրանց օրինակը սովորեցնում և դաստիարակում է։

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԻՍԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԲՆՈՒՅԹՆ առավել պարզ է դրսևորվում սովետների ընտրություններում, երբ ընտրողների կամքի ազատ արտահայտությամբ ընտրվում են պետական իշխանության ներկայացուցչական մարմինները։

Վ. Ի. Լենինը սովետական ընտրական սիստեմի էությունը տեսնում էր նրա ժողովրդականության, ընտրական իրավունքի ամեն տեսակի սահմանափակումների վերացման, ընտրվածներին ժողովրդին ենթարկելու դեմոկրատական սկզբունքների իրականացման մեջ։



Լենինյան գաղափարներով ստեղծված սովետական ընտրական սիստեմը, որն իրավական ակտերի մի ամբողջություն է, մարմնավորում է ժողովրդի կամքը, ապահովում է աշխատավորական լայն զանգվածների ներգրավումը պետական կառավարման գործում։

Կոմունիզմ կառուցող սովետական երկրի ընտրական սիստեմի հիմնադիր սկզբունքն այն է, որ վարից վեր բոլոր սովետների դեպուտատների ընտրությունները կատարվում են ընտրողների **ընդհանուր, հավասար և ուղղակի** ընտրական իրավունքի հիման վրա՝ **գաղտնի** քվեարկությամբ։

Ընդհանուր ընտրական իրավունքը նշանակում է, որ 18 տարին լրացած բոլոր քաղաքացիները, անկախ ռասայական ու ազգային պատկանելությունից, սեռից, դավանանքից, կրթական ցենզից, նստակեցությունից, սոցիալական ծագումից, գույքային դրությունից և անցյալ գործունեությունից, իրավունք ունեն մասնակցելու դեպուտատների ընտրություններին։

Միութենական հանրապետությունների գերագույն սովետների վերջին ընտրություններին (1971 թ., հունիսի 13) մասնակցեցին ընտրողների 99,96, իսկ ՍՍՀՄ Գերագույն սովետի 1974 թ. հունիսի 16-ի ընտրություններին՝ 99,98 տոկոսը։ Դեպուտատության թեկնածուների օգտին քվեարկեց ընտրողների ավելի քան 99,83 տոկոսը։ Դա մեր սոցիալիստական հասարակարգի գաղափարական և բարոյա-քաղաքական միասնության, սովետական ժողովրդի կողմից կոմունիստական կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության միահամուռ պաշտպանության վառ դրսևորումն է։

Պետական իշխանության ներկայացուցչական մարմիններում ընտրվելու իրավունքը նույնպես չի սահմանափակվում որևէ ցենզով կամ վերապահումով։ ՍՍՀՄ Գերագույն սովետում կարող է ընտրվել 23, միութենական և ինքնավար հանրապետությունների գերագույն սովետներում՝ 21, իսկ տեղական սովետներում՝ 18 տարին լրացած յուրաքանչյուր քաղաքացի։ Տարիքային տարբերությունը սահմանված է՝ ելնելով համապատասխան սովետների գործունեության բարդությունից և մասշտաբներից։

Սովետների երկրում միայն անձնական արժանիքները, հասարակական-քաղաքական և աշխատանքային գործունեությունն են պետական իշխանության մարմիններում ընտրվելու չափանիշները։ Ընտրվում են միայն ժողովրդի արժանավոր զավակները, նրանք, ովքեր գործով ցույց են տալիս իրենց նվիրվածությունը հայրենիքին, լենինյան կուսակցության մեծ գործին։

Ըստ ՍՍՀՄ Սահմանադրության 136-րդ և միութենական ու ինքնավար հանրապետությունների սահմանադրությունների համապատասխան հոդվածների, դեպուտատների ընտրությունները հավասար են, այսինքն՝ յուրաքանչյուր քաղաքացի ունի մեկ ձայն և բոլոր քաղաքացիներն ընտրություններին մասնակցում են հավասար հիմունքներով։

Հավասար ընտրական իրավունքը լրացվում է նաև սահմանադրական այլ սկզբունքներով։ Դրանցից մեկն այն է, որ կանայք ընտրվելու և ընտրելու իրավունքից օգտվում են տղամարդկանց հետ հավասարապես։ ՍՍՀՄ Գերագույն սովետի կազմում կանայք 31,3 տոկոս են, միութենական հանրապետությունների գերագույն սովետների կազմում՝ 34,8, իսկ աշխատավորների դեպուտատների տեղական սովետների կազմում՝ 47,4 տոկոս։ ՍՍՀՄ-ում կանայք լայնորեն ներգրավվում են պետության կառավարման գործում, ակտիվորեն մասնակցում կոմունիստական հասարակության կառուցմանը։ Դա սոցիալիստական դեմոկրատիայի կարևորագույն նվաճումներից մեկն է։

Ընտրելու և ընտրվելու իրավունքից հավասարապես օգտվում են ՍՍՀՄ զինված ուժերի շարքերում ծառայողները. այդ սկզբունքը մարմնավորում է մեր ժողովրդի և նրա բանակի անխախտ միասնությունը, արտահայտում է կոմունիստական կուսակցության և սովետական պետության հոգածությունը սոցիալիստական հայրենիքի պաշտպանների նկատմամբ։

Հավասար ընտրական իրավունքն ընդհանուր ընտրական իրավունքի անկապտելի մասն է և լրացնում է սովետական ընտրական սիստեմի ամբողջականությունը։

Բոլոր սովետների ընտրությունները, աշխատավորների դեպուտատների գյուղական ու ավանային սովետներից մինչև ՍՍՀՄ Գերագույն սովետը, քաղաքացիները կատարում են անմիջականորեն, ուղղակի։ Այդ իրավունքը հնարավորություն է տալիս ընտրողներին անմիջականորեն կապված լինել պետական իշխանության ինչպես տեղական, այնպես էլ բարձրագույն մարմինների հետ։ Անձամբ ձայն տալով դեպուտատության թեկնածուին, ընտրողն ինքն է որոշում, թե ում է նա վստահում ներկայացնելու իր շահերը պետական իշխանության մարմիններում։

Ուղղակի ընտրություններն ամրապնդում են դեպուտատների կապն ընտրողների հետ, ուժեղացնում են աշխատավորների վերահսկողությունը դեպուտատների գործունեության նկատմամբ, բարձրացնում վերջիններիս պատասխանատվությունը։ Յուրաքանչյուր դեպուտատ պարտավոր է ընտրողներին հաշիվ տալ իր աշխատանքի ու սովետի գործունեության մասին և կարող է ամեն ժամանակ ետ կանչվել ընտրողների մեծամասնության որոշմամբ, օրենքով սահմանված կարգով։

Սովետական ընտրական սիստեմը խստորեն պահպանում է քվեարկության գաղտնիությունը։ Անձի ազատությունը սոցիալիստական դեմոկրատիայի ամենակարևոր նվաճումներից մեկն է, որը դրսևորվում է նաև սովետական ընտրական սիստեմում։ Քվեարկության գաղտնիությունն ապահովում է անձի ազատությունը, յուրաքանչյուր ընտրողի հնարավորություն ընձեռում իր հայացքներին ու համոզմունքներին համապատասխան, անկաշկանդ արտահայտել իր կամքը, այսինքն՝ քվեարկել։

Այսպիսով, սովետական ընտրական սիստեմը սահմանադրական իր սկզբունքներով, ընտրությունների նախապատրաստման ու անցկացման կարգը որոշող կանոններով խարսխված է աշխատավորական լայն զանգվածների հասարակական-քաղաքական ակտիվ գործունեության վրա։ Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ժողովուրդն ինքն է նախապատրաստում և անցկացնում ընտրությունները։

ԲՈԼՈՐՈՎԻՆ ԱՅԼ Է ՎԻՃԱԿԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ, որտեղ հասարակ աշխատավորները, նույնիսկ ամբողջ ժողովուրդներ, զրկված են տարրական դեմոկրատական իրավունքներից։ «Իմ հայրենիքում՝ Հարավային Աֆրիկայում,— նշում է Հարավ-Աֆրիկյան կոմունիստական կուսակցության նախագահ Յուսուֆ Մոհամեդ Դադուն,— հենց օրենսդրությունն է վավերացնում ու արմատավորում ռասիզմը և ռասայական խտրականությունն ամենամերկ ու ամենանողկալի ձևերով... Սպիտակամորթ փոքրամասնությունն իրեն հայտարարել է «իշխող ռասա»։ Միայն սպիտակամորթները, որոնք ՀԱՀ 20 միլիոնանոց բնակչության մեկ հինգերորդից էլ պակաս են, ունեն քաղաքական իրավունքներ, միայն նրանք են օգտվում տնտեսության և կուլտուրայի բարիքներից» (Приветствия Коммунистической партии Советского Союза в связи с 50-летием образования СССР, Госполитиздат, М., 1973, стр. 323)։

Իսկ Մոհամեդ Դադուի հայրենակից, երիտասարդ բանաստեղծ Ջեյմս Մեթյուզը դառնությամբ գրում է. «Հարավային Աֆրիկան գեղեցիկ երկիր է, որտեղ սպիտակ ծնվել՝ նշանակում է օգտվել հողի բոլոր բարիքներից, բայց որտեղ ավելի լավ է ծնվել մեռած, քան սևամորթ» («За рубежом» 1973, № 16, стр. 30)։ Այդ երկրում քվեարկությանը մասնակցելուց զրկված են բոլոր ոչ սպիտակամորթ քաղաքացիները, որոնք կազմում են բնակչության ավելի քան 80 տոկոսը։

Հայտնի է, որ կապիտալի աշխարհում տասնամյակներ շարունակ աշխատավորները դասակարգային համառ պայքար են մղում իրենց ազատության և դեմոկրատական իրավունքների համար։ Այդ պայքարի ազդեցությամբ բուրժուական շատ երկրների սահմանադրություններում ձևականորեն հռչակվել է ընդհանուր ընտրական իրավունք։ Սակայն իշխող դասակարգն ամեն կերպ ձգտում է զանազան ցենզերով ու պայմաններով սահմանափակել աշխատավորության ընտրական իրավունքները։ Դրանցից մեկը նստակեցության ցենզն է։ ԱՄՆ-ի տարբեր նահանգներում, օրինակ, որպեսզի քաղաքացին կարողանա մասնակցել ընտրություններին, տվյալ վայրում պետք է ապրի առնվազն վեց ամսից մինչև երկու տարի։ Պարզ է, որ այդ սահմանափակումը վերաբերում է ոչ թե կապիտալի «ամենազոր» տերերին ու նրանց գործակալներին, որոնց տնտեսական ու քաղաքական վիճակն ապահովում է կայուն նստակեցություն, այլ միլիոնավոր գործազուրկներին ու սեզոնային բանվորներին, որոնք տեղից-տեղ են քոչում աշխատանք գտնելու համար։ Ամերիկայի մի շարք նահանգներում գոյություն ունի «գրագիտությունը ստուգելու» կարգ։ Քաղաքացիներին տալիս են այնպիսի միտումնավոր հարցեր, որոնց շատ դժվար է պատասխանել։ Այդ կարգը օգտագործվում է ոչ միայն բավարար գրագիտություն չունեցողների, այլև անցանկալի անձանց, մասնավորապես նեգրերի ու հնդիկների դեմ։ Մի շարք նահանգներում ընտրական իրավունք չունեն խնամակալական տներում ապրող և տեղական ինքնավարության մարմիններից նպաստ ստացող աղքատները, այլ նահանգներում՝ «լավ բնավորություն» կամ «առողջ բանականություն», «լավ համբավ» չունեցող անձինք։ Դժվար չէ նկատել, որ նման միջոցներով իշխանությունն ունակ է ուզածդ քաղաքացուն զրկել քվեարկության իրավունքից։ Բոլոր ցենզերն ու պայմանները բավարարելու դեպքում իսկ, եթե ընտրողը ժամանակին չի պահանջում իրեն մտցնել ընտրական ցուցակների մեջ, չի կարող և մասնակցել քվեարկությանը։ Ընտրողների գրանցման ոչ պարտադիր լինելու նման կարգը հատկապես ուղղված է նեգրերի դեմ, որոնք ընտրությունների ժամանակ, վախենալով ռասիստների ճնշումից ու ահաբեկումից, հաճախ չեն ցանկանում գրանցվել։ Պատահական չէ, որ ԱՄՆ-ում 1960 թ. պրեզիդենտական ընտրություններին մասնակցեց ձայնի իրավունք ունեցող ընտրողների միայն 62, 1964 թ.՝ 61,2, 1968 թ.՝ 60,8 տոկոսը («Агитатор» 1972, № 7, стр. 60—61), իսկ 1972 թ. ընտրություններին մասնակցելու իրավունքից չօգտվեց ավելի քան 45 մլն ամերիկացի։ 1973 թ. մարտին Ֆրանսիայի ազգային ժողովի ընտրությունների առաջին փուլին չմասնակցեց գրանցված ընտրողների 19,1 (5,86 մլն մարդ), իսկ երկրորդին՝ 18,2 տոկոսը (4,9 մլն մարդ)։ Բուրժուական ընտրական սիստեմի ոչ դեմոկրատական բնույթն արտահայտվում է նաև ընտրական օկրուգների անհավասարությամբ։ Ընտրողների թվով անչափ մեծ են այն օկրուգները, որտեղ շատ են բանվորները և որտեղ քվեարկվում են առաջադիմական կուսակցությունների թեկնածուներ։ Ֆրանսիայի ազգային ժողովի 1973 թ. ընտրությունների ժամանակ, օրինակ, օկրուգներից մեկում եղել է 146 հազար ընտրող, որտեղ կոմունիստ թեկնածուն ընտրվել է շուրջ 61 հազար ձայնով, իսկ մեկ ուրիշ օկրուգում ընտրողների թիվը կազմել է 29 հազար մարդ, որտեղ բուրժուական կուսակցության թեկնածուն ընտրվել է 9,5 հազար ձայնով։ Վերջին ընտրություններում Ֆրանսիայի ազգային ժողովում միջին հաշվով կոմունիստ դեպուտատն ընտրվել է 70,6, իսկ բուրժուական կուսակցության ներկայացուցիչը՝ 31,4 հազար ձայնով («Агитатор» 1973, № 11, стр. 61)։ Այստեղ արդեն բուրժուազիան չի տատանվում իրեն ձեռնտու չափսերով «ձևել» ընտրական օկրուգները։ Արգենտինայում, Մեքսիկայում, Թուրքիայում և այլուր չեն քվեարկում զինվորները, իսկ մի շարք երկրներում՝ կանայք։

Բուրժուական երկրներում ընտրություններն անցնում են աշխատավորների և ֆինանսա-արդյունաբերական օլիգարխիան ներկայացնող իշխանությունների միջև տեղի ունեցող կատաղի ընդհարումների, դասակարգային սուր պայքարի պայմաններում։ Աշխատավորության դեմ գործադրվում են կապիտալը, շանտաժը, խաբեությունը, ահաբեկումը, որպեսզի թույլ չտան ժողովրդական զանգվածներին ազատորեն արտահայտելու իրենց կամքը։ «Իրենց ձեռքին ունենալով այնպիսի զորեղ միջոցներ,— նշված է ՍՄԿԿ ծրագրում,— ինչպիսիք են կապիտալը, մամուլը, ռադիոն, կինոն, հեռուստատեսությունը, օգտագործելով արհմիություններում և մյուս մասսայական կազմակերպություններում իրենց դրածոներին, մոնոպոլիստները մոլորեցնում են ժողովրդական

մասսաներին, ընտրողներին պարտադրում են իրենց թեկնածուները»: Թեև ԱՄՆ-ում բնակչության մեծ մասը կազմում է բանվոր դասակարգը, կոնգրեսի շուրջ 35 տոկոսն արդյունաբերողներ ու առևտրականներ են, իսկ ավելի քան 60 տոկոսը՝ ազատ զբաղմունքի ներկայացուցիչներ: ԳՖՀ-ում բանվորները զբաղված բնակչության մոտավորապես կեսն են, բայց բունդեսթագում նրանք կազմում են 7,1 տոկոսը:

Կապիտալի աշխարհում, ինչպես ընտրությունների նախապատրաստման, այնպես էլ անցկացման ժամանակ կատաղի բնույթ է ստանում թեկնածու առաջադրած բուրժուական կուսակցությունների միջև տեղի ունեցող պայքարը: Նրանցից ամեն մեկը բոլոր հնարավոր միջոցները գործադրում է մյուսի թեկնածությունը տապալելու համար: Շվեդացի լրագրող Էրենմարկը Անգլիայի 1974 թ. պառլամենտական ընտրական կամպանիան նմանեցնում է պրոֆեսիոնալ բռնցքամարտիկներ Ինգեմա-Ռոմ Յուհանսոնի և Ֆլոյդ Պետերսոնի մրցամարտին: Նա գրում է. «Երկու գլխավոր քաղաքական գործիչներ բռնցքամարտում են... Մենք արդեն անգիր գիտենք մարտնչողների բոլոր փաստարկները, խորամանկությունները, կեղծ շարժումները, ոտքերի գործադրաձևը, հարվածները գոտկատեղից ներքև, գիտենք նրանց ձեռնոցներում կապարի առկայության մասին» («За рубежом» 1974, № 10, стр. 24): Այս է բազմակուսակցության «գովաբանված դեմոկրատիան»:

ՍՈՎԵՏՆԵՐԻ ԵՐԿՐՈՒՄ ՊԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ներկայացուցչական մարմինների ամեն մի ընտրություն սոցիալիստական դեմոկրատիայի մեծ տոն է, համընդհանուր ստուգատես, որի ընթացքում հանրագումարի են բերվում այդ մարմինների՝ անցած ժամանակաշրջանի աշխատանքի արդյունքները, նշվում հաջողություններն ու թերությունները, արվում են առաջարկություններ, տրվում նակազներ՝ կուսակցության նախագծումների իրականացման համար: Սովետների ընտրությունները, որ աշխատավորների քաղաքական դաստիարակության մեծ դպրոց են, բարձրացնում են ընտրողների ակտիվությունը, ուժեղացնում նրանց վերահսկողությունը սովետների ու նրանց դեպուտատների գործունեության նկատմամբ:

Միութենական և ինքնավար հանրապետությունների գերագույն սովետների ու աշխատավորների դեպուտատների տեղական սովետների առաջիկա ընտրությունները մեկ անգամ ևս կցուցադրեն սոցիալիստական դեմոկրատիայի մեծ ուժը: Դրանց նախապատրաստման և անցկացման համար ստեղծված ընտրական հանձնաժողովներում ընդգրկված են միլիոնավոր մարդիկ: Կոմունիստների և անկուսակցականների բլոկի անունից առաջադրվել և գրանցվել են դեպուտատության թեկնածուները՝ բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, սովետական ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչները: Այս օրերին աշխատավորների շրջանում լայն ծավալ է ստացել կազմակերպական և ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը. նրանց պարզաբանվում են սովետական ընտրական սիստեմի սկզբունքները, մեր երկրի տնտեսական և սոցիալ-կուլտուրական զարգացման խնդիրները:

Ընտրական կամպանիայի ընթացքում նոր թափ է ստացել հնգամյակի եզրափակիչ տարվա պլանային առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար ծավալված սոցիալիստական մրցությունը:

Ընտրությունների օրը՝ հունիսի 15-ին, աշխատավորները մեկ մարդու նման ձայն կտան դեպուտատության թեկնածուների օգտին, սովետական ժողովրդի արժանավոր զավակների օգտին: Դա կլինի կոմունիստական կուսակցության քաղաքականության և ժողովրդի շահերը մարմնավորող կոմունիստների և անկուսակցականների անխախտ բլոկի ընտրական պլատֆորմի մի նոր հաղթանակ, որն ավելի կբարձրացնի պետական իշխանության մարմինների աշխատանքի մակարդակը, նոր խթան կհանդիսանա կոմունիզմի կառուցման գործին:



# ՉԵԽՈՍԼՈՎԱԿՅԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ԱԶԳԱՅԻՆ ՏՈՆԸ

Ռ. Բ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ՉԵԽՈՍԼՈՎԱԿՅԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ մի առանձին շուքով է նշում հաղթանակի օրը, որը նաև նրա ազգային վերածննդի տոնն է: 1945 թ. մայիսի 9-ին սովետական զորքերը, ապստամբության դրոշ պարզած չեխոսլովակյան ժողովրդի հետ, վերջին ջախջախիչ հարվածը հասցրին հիտլերյան զավթիչներին և, ազատագրելով Պրագան, երկիրն իսպառ մաքրեցին ֆաշիստական ավտեղությունից: Չեխերի ու սլովակների՝ Եվրոպայի այդ հնամենի ժողովուրդների պատմության մեջ նոր դարագլուխ բացվեց:

Դարեր շարունակ Չեխոսլովակիան գտնվել է օտար նվաճողների լծի տակ: 1918 թ. այն, ի վերջո, ձեռք բերեց իր անկախությունը: Բայց դեռ չէր հասցրել նշել Հաբսբուրգների լուծը թոթափելու 20-ամյակը, երբ հիտլերյան անսքող ագրեսիայի զոհ դարձավ: Չեխոսլովակիայի անեքսիան որևէ բանով չարդարացված ու չհիմնավորված զավթողական քաղաքականության մի ամոթալի ակտ էր, որով հիտլերյան Գերմանիան մարտահրավեր էր նետում ազատասեր մարդկությանը:

Դեռ 1938 թ. փետրվարի 20-ին Հիտլերը ռայխստագում աներկբայորեն հայտարարեց, թե ինքը ձգտելու է միավորել Գերմանիայից դուրս ապրող գերմանացիներին: Դա բացահայտ գործողությունների դիմելու ազդանշան էր արդեն, որին անմիջապես հաջորդեց հիտլերյան զորքերի ներխուժումը Ավստրիա: Աշխուժացան այլ երկրներում գործող ֆաշիստական կազմակերպությունները: Չեխոսլովակիայի ներսում այդպիսին էր սուդետա-գերմանական կուսակցու-Չեխոսլովակիայի ներսում այդպիսին էր սուդետա-գերմանական կուսակցու-
թյունը, որն ըստ էության Հիտլերի նացիոնալ-սոցիալիստական կուսակցության մասնաճյուղն էր և բացահայտորեն գործում էր նրա թելադրանքով: Այդ կազմակերպությանն ուղղակի առաջադրանք էր տրված՝ առանց միջոցների խտրության հող նախապատրաստել Չեխոսլովակիան մասնատելու և Գերմանիայի կողմից այդ երկրի զավթումն իրագործելու համար: Հավատարիմ իր ռեակցիոն քաղաքականությանը, չեխոսլովակյան կառավարությունը հանդուրժող թողտվությամբ էր վերաբերվում ֆաշիստական վարձկանների քայքայիչ գործունեությանը, հույս ունենալով այդ ամենն ուղղել երկրի դեմոկրատական տարրերի, ամենից առաջ կոմունիստական կուսակցության դեմ: Կառավարող ագրարային կուսակցության այդ անհեռատես ու ազգադավ քաղաքականությունը անվերապահորեն աջակցություն էր գտնում Անգլիայի ու Ֆրանսիայի ղեկավար շրջաններում, որոնց հետ բուրժուական Չեխոսլովակիայի պարագլուխները կապել էին երկրի բախտը և որոնք պատրաստ էին ագրեսորին «խաղաղեցնելու» համար զոհաբերել իրենց դաշնակցին:

Ոչ մի տարակույս չէր կարող լինել, որ արևմուտքի տերություններն անտարբեր էին հանել Չեխոսլովակիայի անկախությունը: Օրհասական այդ պահին Ազգերի լիգայում սովետական պատվիրակը մերկացրեց ագրեսորին խրախուսելու քաղաքականությունը, որ վարում էին Անգլիան ու Ֆրանսիան, և առաջարկեց անհապաղ կոլեկտիվ միջոցներ ձեռնարկել ագրեսիան խափանելու հա-

մար։ Ընդ որում, սովետական պատվիրակը հայտարարեց, որ ՍՍՀՄ-ը պատրաստ է կատարել փոխադարձ օգնության վերաբերյալ սովետա-չեխոսլովակյան համաձայնագրից բխող իր պարտավորությունները։ Դա լուրջ նախազգուշացում էր Գերմանիային, և եթե Ազգերի լիգան այն ժամանակ ունկնդրեր Սովետական Միության ձայնին, Չեխոսլովակիան կարող էր փրկվել։

Իրադարձությունները, սակայն, բոլորովին այլ ընթացք ստացան։ Անգլիայի ու Ֆրանսիայի ճնշմամբ, Չեխոսլովակիայի կառավարությունն ընդունեց Սուդետական մարզը Գերմանիային զիջելու պահանջը։ Բայց հիտլերականները բնավ մտադիր չէին կանգնել կես ճանապարհին և օր-օրի ավելի ու ավելի անպատկառ էին դառնում իրենց պահանջների մեջ։ «Չեխոսլովակյան հարցը» լուծելու, իսկ ավելի ճիշտ՝ Հիտլերին գոհացնելու համար Դալադյեի ու Չեմբեռլենի նախաձեռնությամբ 1938 թ. սեպտեմբերի 29-ին հրավիրվեց Մյունխենի կոնֆերանսը, որը Չեխոսլովակիայի նկատմամբ Ֆրանսիայի և Անգլիայի դավաճանական քաղաքականության գագաթը հանդիսացավ։ Շուտով գերմանական զորքերը ներխուժեցին Չեխոսլովակիա և օկուպացրին ավելի քան 28 հազար քառ. կմ տարածությամբ մի ընդարձակ շրջան։ Անգլիայի, Գերմանիայի, Ֆրանսիայի ու Իտալիայի մյունխենյան գործարքից հետո Չեխոսլովակիան կորցրեց իր արդյունաբերական ձեռնարկությունների 51 տոկոսը։ Բայց դա դեռ բոլորը չէր։ Չեխոսլովակիայի նկատմամբ տերիտորիալ պահանջներ ներկայացրին նաև խորտիստական Հունգարիան ու Լեհաստանը և, օգտվելով ստեղծված իրավիճակից, զավթեցին սահմանակից ընդարձակ շրջաններ։ Անդամահատված ու արյունաքամ եղած՝ Չեխոսլովակիան ըստ էության դադարեց գոյություն ունենալ որպես ինքնուրույն պետություն։ 1939 թ. մարտին Գերմանիան օկուպացրեց երկրի մնացած շրջանները։ Հիտլերի հրամանով լիկվիդացվեց Չեխոսլովակյան Հանրապետությունը և դրա փլատակների վրա ստեղծվեց Բոհեմիայի ու Մորավիայի պրոտեկտորատը։ Ֆյուրերի կամակատարների հռչակած «անկախ» Սլովակիան ամբողջովին վասալական կախման մեջ էր Գերմանիայից։ Այսպիսին էր ագրեսորին «խաղաղեցնելու» արևմտյան տերությունների քաղաքականության տխուր հետևանքը։ Անգլիան ու Ֆրանսիան հասարակայնության աչքերին թոզ փչելու համար բողոք հայտնեցին, բայց ընդամենը այն բանի դեմ, որ Հիտլերը Չեխոսլովակիան օկուպացրեց առանց իրենց հետ... «խորհրդակցելու»։

Միայն Սովետական Միությունն էր, որ վճռականորեն դատապարտեց ֆաշիստական ագրեսիան և հրաժարվեց ճանաչել Գերմանիայի մեջ Չեխիայի ու Մորավիայի ներառումը։

Օկուպացնելով Չեխոսլովակիան, գերմանական զավթիչներն ամբողջովին քայքայեցին այդ երկրի էկոնոմիկան։ Նրանք թալանում էին ամեն ինչ՝ սպառման առարկաներից մինչև գործարաններ ու ֆաբրիկաներ, քաղցի մատնելով տեղի բնակչությանը։ Երկրում իշխում էր տեռորը։ Վեց տարում Չեխոսլովակիայից Գերմանիա քշվեց 600 հազար մարդ, այդ նույն ժամանակամիջոցում ֆաշիստները սպանեցին 245 հազար չեխոսլովակյան քաղաքացիների, որից 200 հազարը՝ համակենտրոնացման ճամբարներում։ Երկրում ամենուրեք տեր ու տնօրեն էին զավթիչները։ Չեխերեն լեզուն արգելվեց, գործավարությունը տարվում էր գերմաներեն, փակվեցին համալսարանները...

Ինչպե՞ս այստեղ չվերհիշել հետմյունխենյան, այսպես կոչված, երկրորդ հանրապետության «պրեզիդենտ» Գախայի բեռլինյան գործարքը, երբ նա իր ստորագրած փաստաթղթով «...լիակատար վստահությամբ գերմանական պետության ֆյուրերի ձեռքն էր հանձնում երկրի ու չեխ ժողովրդի ճակատագիրը»։

Երկրի ապիկար կառավարողների դավաճանական քաղաքականությանը չեխոսլովակյան ժողովուրդը հակադրեց անկախության ու ազատության համար մարտնչելու իր անընկճելի կամքը։ Ֆաշիստական զավթիչների դեմ չեխերի ու սլովակների պայքարի ոգեշնչողը Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցությունն էր, որը, գործելով ընդհատակի ծանր պայմաններում, պատվով էր կատարում ժողովրդի ազատագրական պայքարի կազմակերպչի իր դերը։ Դիմադրության շարժումը Չեխոսլովակիայում լայն թափ ստացավ հատ-



կապես այն բանից հետո, երբ սկսվեց սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմը։ Մոսկվայի, Կուրսկի ու Ստալինգրադի հերոսամարտերն ուժ ու ավյուն էին ներարկում չեխ հայրենասերներին, որոնք օր-օրի ընդլայնում էին պարտիզանական շարժումը, դիմում մասսայական սաբոտաժի ու տեռորի։ Ժողովրդական վրիժառուները, ի թիվս ֆաշիստական այլ դահիճների, սպանեցին նաև Հիտլերի դրածո Հեյդրիխին։ Որպես պատասխան, ֆաշիստներն աշխարհի երեսից ջնջեցին չեխական Լիդիցե գյուղը։

ՏԱԿԱՎԻՆ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ առաջին օրերին՝ 1941 թ. հուլիսի 18-ին, Սովետական Միության և վտարանդիության մեջ գտնվող չեխոսլովակյան կառավարության միջև ստորագրվեց համաձայնագիր՝ Գերմանիայի դեմ պատերազմում համատեղ գործողությունների, ՍՍՀՄ տերիտորիայում չեխոսլովակյան ազգային զորամիավորումներ ստեղծելու վերաբերյալ։ Դա նշանակում էր, որ ՍՍՀՄ-ը լիովին ճանաչում է Չեխոսլովակիան՝ իբրև անկախ պետություն և իրավահավասար դաշնակից։ Այդ համաձայնագիրը բարոյաքաղաքական մեծ նշանակություն ուներ չեխոսլովակյան ժողովրդի համար։ «...Սովետական Միությունը նորից առաջինն էր,— գրել է Չեխոսլովակիայի կոմկուսի ղեկավար Կլեմենտ Գոտվալդը,— որ նպաստեց մեր հանրապետության համընդհանուր ճանաչմանը և դրանով նրա հետագա գոյության հիմքը դրեց»։ 1942 թ. հունվարի 22-ին կնքվեց նոր համաձայնագիր, որով Սովետական Միությունը Չեխոսլովակիայի կառավարությանը փոխառություն էր հատկացնում՝ ՍՍՀՄ տերիտորիայում չեխոսլովակյան զինվորական միավորումներ կազմավորելու համար։

Առաջին այդպիսի միավորումը փոխգնդապետ Լյուդվիկ Սվոբոդայի (այժմ՝ ՉՍՍՀ պրեզիդենտ) հրամանատարության ներքո ստեղծված գումարտակն էր, որը 1943 թ. մարտին ակտիվորեն մասնակցեց Խարկովի համար մղվող ճակատամարտին։ Մի քանի ամիս անց այն արդեն դարձավ բրիգադ, իսկ ավելի ուշ՝ կորպուս, որը համալրվում էր գերազանցապես գերմանական բանակից սովետական զորքերի կողմն անցած սլովակ զինվորներով։

Ֆաշիզմի դեմ մղվող պայքարում, ինչպես և ընդհանուր առմամբ միջազգային հարաբերություններում Սովետական Միության հետզհետե աճող դերն ու հեղինակությունը Լոնդոնում ապաստանած չեխոսլովակյան կառավարությանը, առանձնապես պրեզիդենտ Բենեշին ստիպում էին ավելի ու ավելի լրջորեն հաշվի նստել Սովետական Միության հետ։ 1943 թ. դեկտեմբերին Բենեշը եկավ Մոսկվա։ Ստորագրվեց պայմանագիր երկու երկրների բարեկամության, փոխադարձ օգնության և հետպատերազմյան համագործակցության վերաբերյալ։ Դա Չեխոսլովակիայի բանվոր դասակարգի ու կոմկուսի քաղաքականության հաղթանակն էր, որոնք ակտիվորեն պայքարում էին ՍՍՀՄ-ի հետ բարեկամության ամրապնդման համար։

ՍՈՎԵՏԱ-ՉԵԽՈՍԼՈՎԱԿՅԱՆ ՀԱՄԱՁԱՅՆԱԳՐԻ ստորագրումը, սովետական զորքերի կողմից Լեհաստանի և Ռումինիայի ազատագրումը հսկայական ներգործություն ունեցան Չեխոսլովակիայում ազգային-ազատագրական շարժման հետագա վերելքի վրա։ Այդ շարժման առավել պայծառ էջերից մեկը 1944 թ. օգոստոսի 30-ին Սլովակիայում բռնկված ապստամբությունն էր, որով, ըստ էության, դրվեց Չեխոսլովակիայում ազգային-դեմոկրատական հեղափոխության սկիզբը։ Ապստամբներին օգնելու համար Սովետական Միությունից այնտեղ փոխադրվեցին 1-ին չեխոսլովակյան ավիացիոն գունդը և 2-րդ չեխոսլովակյան դեսանտային բրիգադան։ Ապստամբության հաջողությանը մեծապես նպաստեց Կարպատներում սովետական զորքերի ռազմական գործողությունների ծավալումը, որոնց ակտիվորեն մասնակցում էին նաև գեներալ Լ. Սվոբոդայի բանակային կորպուսի զորամիավորումները։

Չեխոսլովակիայի ազատագրումը, որ սովետական զորքերն սկսել էին 1944 թ. սեպտեմբերին, ավարտվեց 1945 թ. մայիսի 9-ին։ Երկրորդ համաշխարհային պատերազմի վերջին մարտերը տեղի ունեցան Պրագայի փողոց-

ներում։ Գեներալ Ռիբալկոյի և գեներալ Լելյուշենկոյի տանկային բանակներն այդ օրն օգնության հասան ապստամբած Պրագային և վերջին ջախջախիչ հարվածները հասցրին ֆաշիստական օկուպանտներին։ Չեխոսլովակիայի ազատագրման համար իրենց կյանքը զոհեցին 140 հազար սովետական զինվորներ և սպաներ։ Մայիսի 9-ը սովետական և չեխոսլովակյան ժողովուրդները նշում են ոչ միայն իբրև ընդհանուր թշնամու դեմ տարած հաղթանակի, այլև որպես երկու ժողովուրդների անխախտ բարեկամության տոն։

Դեռ մինչև երկրի լիակատար ազատագրումը, 1945 թ. ապրիլի 4-ին սլովակյան Կոշիցե քաղաքում կազմակերպվեց նոր Չեխոսլովակիայի Ազգային ճակատի առաջին կառավարությունը։ Իրադրությունը, դասակարգային ուժերի հարաբերակցությունն այնպիսին էին, որ այդ կառավարության մեջ, կոմունիստներից և սոցիալ-դեմոկրատներից բացի, մտան նաև բուրժուական կուսակցությունների ներկայացուցիչները։ Այլ կերպ ասած, պրոլետարիատն ստիպված էր իշխանությունը կիսել բուրժուազիայի հետ, պահպանելով, սակայն, նրանում իր հեգեմոն դերը։ Իր առաջին դեկլարացիայում այդ կառավարությունը նշում էր, որ ինքը «չեխերի ու սլովակների ժողովրդական լայն ճակատի կառավարություն է՝ կազմված այն բոլոր սոցիալական խավերի ու քաղաքական ուղղությունների ներկայացուցիչներից, որոնք հայրենիքում և արտասահմանում ազատագրական պայքար են մղել գերմանական և հունգարական բռնապետությունը տապալելու համար» (История Чехии, М., 1947, стр. 252)։

Դեկլարացիայում խորին երախտագիտությամբ է խոսվում Կարմիր բանակի ազատագրական միսիայի մասին և ընդգծվում է այն միտքը, որ ՍՍՀՄ-ի հետ ամուր դաշինքը հանդիսանալու է Չեխոսլովակիայի արտաքին քաղաքականության անկյունաքարը։ Կառավարությունը խոստանում էր զարգացնել ազգային դեմոկրատական հեղափոխությունը, արդարացիորեն լուծել ազգային հարցը, բարձրացնել բանվոր դասակարգի դերը։ Այս ամենը նշանակում էր, որ Չեխոսլովակիայում դրվում է նոր ժողովրդա-դեմոկրատական պետության հիմքը։

ԻՐ ՍՏԵՂԾՈՒՄԻՑ ԱՆՄԻՋԱՊԵՍ ՀԵՏՈ ԱԶԳԱՅԻՆ ՃԱԿԱՏԻ կառավարությունը ձեռնամուխ եղավ քաղաքական ու սոցիալ-տնտեսական մի շարք կարևոր միջոցառումների իրականացմանը, որոնք ամրապնդեցին ժողովրդական իշխանությունը։ Չեխոսլովակիայի կոմունիստական կուսակցությունը, որը մշակել էր Կոշիցեի ծրագիրը, ընտրել էր տվյալ ժամանակաշրջանի համար առավել ճիշտ տակտիկա՝ Ազգային ճակատի քաղաքական կուրսի իրականացումը. այն հնարավորություն էր տալիս աստիճանաբար մեկուսացնել բուրժուազիային և իշխանության մեջ ամրապնդել բանվոր դասակարգի դիրքերը։

Երկրի քաղաքական-տնտեսական կյանքում կարևորագույն իրադարձություն էր արդյունաբերության հիմնական ճյուղերի ու բանկերի ազգայնացումը, որն իրականացվեց 1945 թ. հոկտեմբերին, բուրժուազիայի դեմ մղվող կատաղի պայքարի պայմաններում։ Տնտեսական կյանքում, այսպիսով, առաջատար դիրքերն զբաղեցրեց բանվոր դասակարգը, թեև ազգայնացումն ամբողջովին չվերացրեց կապիտալիստական սեփականությունը։ Բանվորագյուղացիական դաշինքի ամրապնդման առումով վիթխարի դեր խաղաց հողային ռեֆորմը։ Երեք տարվա ընթացքում խոշոր կալվածատերերից բռնագրավվեց 4 մլն հեկտար հող և տրվեց չքավոր ու սակավահող գյուղացիներին։

1945 թվականը, իր վճռորոշ իրադարձություններով հանդերձ, Չեխոսլովակիայի կոմունիստների համար մինչև վերջ չլուծեց հեղափոխության գլխավոր՝ իշխանության հարցը։ ՉԿԿ-ն այն ժամանակ առաջնորդվում էր խաղաղ ճանապարհով սոցիալիզմին անցնելու կուրսով, որի տեսական հիմքը բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունն աստիճանաբար սոցիալիստականի վերաճելու լենինյան ուսմունքն է։ Կոմունիստների աճող հեղինակության փայլուն ապացույցը 1946 թ. տեղի ունեցած Ազգային ժողովի ընտրություններն էին. 300 մանդատից նրանք ստացան 114-ը։ Չեխոսլովակիայի



պատմության մեջ առաջին անգամ կոմունիստը կառավարության ղեկավար դարձավ. դա միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման ականավոր գործիչ Կլեմենտ Գոտվալդն էր։ Կառավարության 26 անդամներից 9-ը կոմունիստներ էին։

Ամենահրատապ խնդիրը, որ ծառացել էր այդ շրջանում նոր կառավարության առջև, երկրի էկոնոմիկայի վերականգնումն էր։ 1945 թ. մայիսին նրա արդյունաբերական արտադրանքը կազմում էր նախապատերազմյան մակարդակի կեսը միայն։ Այդ դժվարին գործում չեխոսլովակյան բանվոր դասակարգը դրսևորեց իր հիրավի հեղափոխական էությունը և, չնայած ներքին ու արտաքին ռեակցիայի կատաղի դիմադրությանը, հաջողությամբ իրականացրեց ժողովրդական տնտեսության վերականգնման երկամյա պլանը (1947—1948 թթ.)։ Չեխոսլովակիայի համար այդ ծանր տարիներին, երբ 1947 թ. ահավոր երաշտից հետո երկրին սպառնում էր սով, նրան անգնահատելի օգնություն ցույց տվեց Սովետական Միությունը՝ իր համար ևս դժվարին այդ շրջանում տրամադրելով 400 հազար տոննա հացահատիկ։

Ի դերև ելան ստեղծված ծանր դրությունից օգտվելու բուրժուազիայի փորձերը։ Բայց դա չէր նշանակում, թե նա առհասարակ հրաժարվում է իր քաղաքական նպատակներից։ Ընդհակառակը. ռեակցիան ուժ և միջոցներ էր հավաքում վճռական գրոհի համար։ 1948 թ. սկզբին Չեխոսլովակիայում իրար դեմ-հանդիման կանգնած էին դասակարգային ու քաղաքական երկու ուժ՝ բանվոր դասակարգը, մանր գյուղացիությունը և առաջավոր մտավորականությունը, որոնք համախմբված էին կոմունիստական կուսակցության շուրջը, և բուրժուազիան, որը դեռևս բավական ամուր դիրքեր ուներ ինչպես էկոնոմիկայում, այնպես էլ պետական ապարատում։ Վերջինս որոշել էր վճռական գործողությունների դիմել այն ժամանակ, երբ երկիրը կսկսեր նախապատրաստվել 1948 թ. համընդհանուր ընտրություններին։ Բուրժուազիան փորձում էր դեռ մինչև ընտրություններն իր օգտին փոխել ուժերի հարաբերակցությունը և բարենպաստ պայմաններ ստեղծել ժողովրդի իշխանությունը տապալելու համար։ Այդ դավերը նյութելիս բուրժուազիան նկատի ուներ, որ ինքը վճռական պահին անհրաժեշտ աջակցություն կստանա ոչ միայն կառավարության մեջ գտնվող իր ներկայացուցիչներից, այլև պրեզիդենտ Բենեշից։ Նա քիչ հույսեր չէր կապում և արևմուտքի հետադիմական շրջանների հետ։

1948 թ. փետրվարի 20-ին 12 ռեակցիոն մինիստրները հրաժարական տվեցին՝ ենթադրելով, թե դրանից հետո ստիպված հրաժարական կտա նաև Կ. Գոտվալդի կառավարությունը, որին կփոխարինի արդեն բուրժուականը։ Մինիստրների այդ վարքագիծն արժանացավ պրեզիդենտի հավանությանը, որը դրանով իսկ ցույց տվեց ռեակցիայի հետ իր հոգեհարազատությունը։ Բայց իրադարձությունները բոլորովին այլ կերպ զարգացան։ Կ. Գոտվալդի կառավարությունը ոչ միայն հրաժարական չտվեց, այլև վճռականորեն ազատվեց դավադիր մինիստրներից։ Կոմունիստների կոչով իր հեղափոխական նվաճումները պաշտպանելու համար ոտքի ելավ աշխատավորական Չեխոսլովակիան։ Երկրով մեկ անցկացվում էին ռեակցիայի դեմ ուղղված բողոքի միտինգներ ու ցույցեր, կազմակերպվում էին Ազգային ճակատի գործողության կոմիտեներ, որոնք, չսպասելով կառավարական ճգնաժամի ելքին, տեղերում սկսեցին պետական ապարատն ու հասարակական կազմակերպությունները մաքրել հետադիմական տարրերից։ Փետրվարի 25-ին պրեզիդենտն ստիպված էր ընդունել մինիստրների հրաժարականը և հաստատել Կ. Գոտվալդի ներկայացրած կառավարության կազմը։

1948 Թ. ՓԵՏՐՎԱՐՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿՈՎ ԱՎԱՐՏՎԵՑ ազգային դեմոկրատական հեղափոխությունը խաղաղ ճանապարհով սոցիալիստականի վերաճելու պրոցեսը։ Իշխանությունն ամբողջովին անցավ բանվոր դասակարգի, աշխատավորների ձեռքը։ Չեխոսլովակիայում հաստատվեց պրոլետարիատի դիկտատուրա։ Դա վճռական շրջադարձ էր չեխոսլովակյան ժողովրդի կյանքում, որի առջև սոցիալիստական շինարարության նոր հեռանկարներ էին բացվում։

րում է նաև մարդատար ավտոմեքենաներ, տրակտորներ, ջերմաքարշեր, ինքնաթիռներ, սարքավորումներ այնպիսի վճռորոշ ճյուղերի համար, ինչպիսիք են էլեկտրոնիկան, էներգետիկան և քիմիան: Մեծ է Չեխոսլովակիայի ավանդը նոր տեխնիկայի նկատմամբ ՍՍՀՄ-ի պահանջը բավարարելու գործում: Սովետական շուկայում այժմ իրացվում է ՉՍՍՀ-ի մեքենաշինական արտադրանքի արտահանության 40 տոկոսը:

Երկու երկրների տնտեսական համագործակցության ասպարեզում նոր փուլ բացեց սոցիալիստական ինտեգրացիայի կոմպլեքսային ծրագիրը: Վճռական գործոն են դառնում հնգամյա պլանների կոորդինացումը և դրանց հիման վրա փոխադարձ ապրանքաշրջանառության վերաբերյալ կնքված երկարաժամկետ պայմանագրերը: Ընթացիկ հնգամյակում երկու երկրների միջև ապրանքաշրջանառությունը կկազմի 13,5 մլրդ ռուբլի:

Կոմպլեքսային ծրագրին համապատասխան, Չեխոսլովակիան մասնագիտանում է 350 տեսակի մեքենաների ու սարքավորումների արտադրության մեջ: Արդեն այս հնգամյակում նա ՏՓԽ-ի երկրներին կմատակարարի 6 մլրդ կրոն ընդհանուր արժողությամբ այդպիսի մեքենաներ:

ՍՍՀՄ-ի ու Չեխոսլովակիայի միջև գիտատեխնիկական համագործակցության վերաբերյալ առաջին համաձայնագիրը ստորագրելու պահից անցել է 28 տարի: Այդ ընթացքում նրանք միմյանց տրամադրել են տեխնիկական փաստաթղթերի մոտ 15 հազար կոմպլեկտ: Ներկայումս երկու երկրների մասնագետները համատեղ աշխատանք են կատարում հարյուրավոր այնպիսի պրոբլեմների լուծման ասպարեզում, որոնք առավել հրատապ են գիտության ու տեխնիկայի զարգացման արդի շրջանում: Լայն տարածում է ստանում նաև համատեղ գիտատեխնիկական խորհուրդների ու կոնստրուկտորական բյուրոների ստեղծումը: Այդ ամենը հնարավորություն է տալիս տնտեսելու միջոցներ, առավել նպատակահարմար ձևով լուծելու փոխադարձ հետաքրքրություն ներկայացնող տնտեսական ու գիտատեխնիկական հարցերը:

Տնտեսության, գիտության ու տեխնիկայի ասպարեզում սովետա-չեխոսլովակյան համագործակցությունը երեսնամյա փորձ ունի արդեն: Այդ փորձը աշխատանքի սոցիալիստական բաժանման տնտեսական արդյունավետության լավագույն ապացույցն է և երկու երկրների առջև ծառացած տնտեսական վիթխարի խնդիրների լուծման ուղեցույցը:

Երկու երկրների համագործակցությունը հետզհետե իր մեջ ներառնում է ոչ միայն տնտեսական ու գիտատեխնիկական, այլև հասարակական-քաղաքական կյանքի նոր ոլորտներ: Փոխադարձ լայն կապերն էապես խթանում են կրթության, առողջապահության ու մշակույթի զարգացմանը: Սովետական ժողովրդի հետ եղբայրական բարեկամության ամրապնդման ասպարեզում մեծ աշխատանք է կատարում չեխոսլովա-սովետական բարեկամության միությունը, որն իր շարքերում ունի մեկ միլիոն 760 հազար անդամ:

Եղբայրական Չեխոսլովակիան մեծ հանդիսավորությամբ տոնում է իր ազգային վերածննդի տարելիցը: Չեխոսլովակյան ժողովուրդը, ինչպես նշում է Գ. Հուսակը, երբեք չի մոռանա 1945 թ. գարունը, երբ նա իր հողի վրա ողջունեց սովետական ազատարար զինվորին: «Սովետական բանակի կողմից Չեխոսլովակիայի ազատագրումը պատմական ուղենիշ դարձավ մեր երկրի նորագույն պատմության մեջ,— գրում է Գ. Հուսակը:— Ընդհանուր թշնամու դեմ պայքարում ծնվեց Չեխոսլովակիայի ու Սովետական Միության ժողովուրդների ամուր և անխախտ բարեկամությունը: Ի դեմս Սովետական Միության, մեր երկրի աշխատավորները ձեռք բերեցին անշահախնդիր բարեկամի, որի հետ նրանց կապում է գաղափարների ու նպատակների միասնությունը, հուսալի պարտնյորի՝ տնտեսական, կուլտուրական և այլ բնագավառներում համագործակցելու համար, իսկ գլխավորը՝ ձեռք բերեցին ազգային ու պետական անվտանգության անխորտակելի հենարան» (Густав Гусак. Избранные статьи и речи. М., 1973, стр. 865—866):

Սովետական ժողովուրդն անկեղծորեն ուրախ է սոցիալիստական Չեխոսլովակիայի պատմական նվաճումների համար և սրտանց հաջողություններ է մաղթում նրան նոր հասարակարգի կառուցման մեծ գործում:

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



## ՌՈՒՍ ՄԵԾ ԳՐՈՂԸ

**(Մ. Ա. ՇՈԼՈԽՈՎԻ ԾՆՆԴՅԱՆ 70-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)**

**Ս. Կ. ԴԱՐՈՆՅԱՆ**

ԵԼՈՒՅԹ ՈՒՆԵՆԱԼՈՎ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ, Մ. Ա. Շոլոխովն ասել է. «Ես կողմնակից եմ, որ փոթորկվի գրողի տաք արյունը՝ երբ նա գրում է, որ շիկանա նրա դեմքը թշնամու նկատմամբ տածած զուսպ ատելությունից՝ երբ նրա մասին է գրում, և որ գրողը ծիծաղի ու լաց լինի այն հերոսի հետ, որին ինքը սիրում է և, որը թանկ է իր համար» («XXII съезд КПСС. Стенографический отчет», т. 2, Госполитиздат, М., 1962, стр. 171):

Այս սքանչելի խոսքերը կարող են բնաբան լինել ռուս մեծ գրող, ակադեմիկոս, լենինյան, պետական և նոբելյան մրցանակների դափնեկիր, սոցիալիստական աշխատանքի հերոս Միխայիլ Ալեքսանդրովիչ Շոլոխովի ողջ ստեղծագործության համար: Հիրավի, «փոթորկվում է տաք արյունը» նրա բոլոր գրքերում: Ընթերցողը ծիծաղում և լաց է լինում, սիրում և ատում է այս գրքերի հերոսների հետ: Ահա թե ինչու Շոլոխովի ստեղծագործությունները հարստացրել են ոչ միայն սովետական, այլև համաշխարհային գրականությունը: Նրանք նվաճել են համաշխարհային համբավ, դարձել համամարդկային կուլտուրայի սեփականությունը: «Ինձ շատ է դուր գալիս ռուս գրականությունը,— ասում էր Էռնեստ Հեմինգուեյը:— Ես ձևավորվել եմ նրա ազդեցության տակ: Պուշկին, Լերմոնտով, Տոլստոյ, Դոստոևսկի... Եվ, իհարկե, Գոգոլի «Տարաս Բուլբան»: Ժամանակակից գրողներից ինձ դուր է գալիս Շոլոխովը» («Իզվեստիա», 1960 թ. մարտի 19): Անգլիական խոշորագույն գրողներից մեկը՝ Չարլզ Պերսի Սնոուն նկատել է. «Առանձնապես մեծ է իմ համակրանքը Շոլոխովի ստեղծագործության նկատմամբ: Ես նրան համարում եմ աշխարհի լավագույն գրողներից մեկը» («Литературная газета», 14 июня 1960г.):

Շոլոխովի ստեղծագործություններում մարմնավորված են ժողովրդական մտածողության իմաստությունը, արդարացիությունը, բանաստեղծականությունը, մի ամբողջ պատմական դարաշրջանի հումանիզմը՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից մինչև մեր օրերը: Մեր երիտասարդության մի քանի սերունդ դաստիարակվել է Շոլոխովի գրքերով, դրանցից սովորել անսահման սեր հայրենիքի նկատմամբ, հավատարմություն կոմունիստական կուսակցության գործին: Շոլոխովի խորապես ժողովրդական ստեղծագործությունն ամբողջ աշխարհի առջև բացեց սովետական մարդու հոգեկան գեղեցկությունը, բարոյական բարձր զգացումները, հայրենասիրությունը, հավատարմությունը կոմունիստական իդեալներին:

Ելույթ ունենալով Շոլոխովի ծննդյան 60-ամյակի առթիվ Մոսկվայում կազմակերպված հանդիսավոր երեկոյին, Կոնստանտին Ֆեդինը գրողի կենսագրությունն ու ստեղծագործական ուղին համեմատել է ջրառատ գետի հունի հետ: Եվ իրոք, Շոլոխովին բաժին է ընկել դարաշրջանի ամենափոթորկալի, ամենախոր հոսանքներից մեկը: Այս իմաստով նրա կենսագրությունը վառ է ու արտասովոր. այն սերտորեն միահյուսված է նրա գրքերի, նրա հերոսների, ժողովրդի, երկրի հետ:

Միխայիլ Ալեքսանդրովիչը ծնվել է ռուսական առաջին հեղափոխության տարում: Գուցե այդ պատճառով էլ նրա բոլոր ստեղծագործությունները տոգորված են հեղափոխական պաթոսով, մարտական ոգով, և դրա համար էլ հրահրում են ընթերցողների սրտերը: Դոնի Վյոշենսկայա հարազատ ստանիցան այժմ դարձել է ուխտագնացության վայր՝ ինչպես Լև Տոլստոյի Յասնայա Պոլյանան: Գրողը սիրում է իր երկրամասը, հպարտանում նրանով: «Ծնվել եմ Դոնում,— ասում է նա,— մեծացել եմ այնտեղ, սովորել, ձևավորվել որպես մարդ ու գրող և դաստիարակվել որպես մեր մեծ կոմունիստական կուսակցության անդամ: Եվ որպես իմ վիթխարի, հզոր հայրենիքի հայրենասեր, ես հպարտությամբ ասում եմ, որ նաև իմ հարազատ Դոնի շրջանի հայրենասերն եմ»: Պատահական չէ, որ Շոլոխովին անվանում են Դոնի երգիչ: Նրա գրեթե բոլոր ստեղծագործություններն էլ կապված են նրա հարազատ երկրամասի հետ, վերապրած են իր իսկ կողմից:

Շոլոխովը նոր էր ավարտել գիմնազիայի չորրորդ դասարանը, երբ սկսվեց քաղաքացիական պատերազմը, և նա մխրճվեց կյանքի դաժան դպրոցը, որը և որպես նյութ ծառայեց նրա ապագա ստեղծագործությունների համար: «1920 թվականից ծառայել ու թափառել եմ Դոնի հողում,— պատմում է գրողը իր ինքնակենսագրության մեջ,— երկար ժամանակ եղել եմ պարենաշխատող: Ընկել եմ բանդաների հետևից, որոնք մինչև 1922 թվականը իշխում էին Դոնում, բանդաներն էլ ընկել էին մեր հետևից: Ամեն ինչ ընթանում էր՝ ինչպես պետք էր: Ընկել եմ տարբեր ձախորդությունների մեջ...»:

1922 թ. վերջին Շոլոխովը փոխադրվում է Մոսկվա: Այնտեղ նա աշխատակցում է կոմերիտմիության Կենտկոմի և Մոսկվայի կոմիտեի օրգան «Յունոշեսկայա պրավդային»: Արդեն նրա առաջին տպագիր ստեղծագործությունները («Փորձություն», «Երեք», «Ռևիզոր» ֆելիետոնները) վկայում էին երիտասարդ ժուռնալիստ գրողի դիտողականության և շնորհալիության մասին: Այդ ժամանակ էլ մամուլում լույս են տեսնում նրա առաջին պատմվածքները, որոնք հետագայում մտան **Դոնի պատմվածքներ** և **Երկնագույն տափաստանը** ժողովածուների մեջ:

Մ. Շոլոխովի **Դոնի պատմվածքների** (Մոսկվա, 1926) առաջին ժողովածուի առաջաբանը գրել է **Երկաթե հեղեղ** վեպի փառաբանված հեղինակ Ա. Ս. Սերաֆիմովիչը: Մարգարեական խոսքեր ասաց նա այն ժամանակ. «Ինչպես տափաստանային ծաղիկ, կենդանի պատկերի նման հառնում են ընկ. Շոլոխովի պատմվածքները: Պարզ են ու վառ և պատմածը զգում ես աչքերիդ առջև: Պատկերավոր լեզու, այն գունագեղ լեզուն, որով խոսում են կազակները: Կուռ է, և այդ կուռությունը լի է կյանքով, լարվածությամբ ու ճշմարտությամբ... Բոլոր տվյալները խոսում են այն մասին, որ ընկ. Շոլոխովը կդառնա երևելի գրող»:



Սերաֆիմովիչի մարգարեական խոսքերը իրականացան: Արդեն Շոլոխովի առաջին գրքում զգացվում է վարպետ վիպասանի ձեռքը: Նա պատկերում էր դասակարգային բարդ պայքարի պատկերը Դոնում՝ քաղաքացիական կռիվների տարիներին:

**Դոնի պատմվածքներ** ժողովածուն բացվում է Շոլոխովի **Խալը** առաջին պատմվածքով (1924), որով իրավամբ սկսվում է գրողի ստեղծագործական կենսագրությունը: Կարմիր էսկադրոնի հրամանատար Նիկոլայ Կոշևոյը, պայքար մղելով բանդաների դեմ, բախվում է իր հոր գլխավորած մի բանդայի հետ: Մարտում հայրը սպանում է որդուն և պատահաբար ճանաչում նրա խալից... Նույնպիսի ողբերգական իրավիճակներ են պատկերված **Շիբալկովի սերմը, Բոստանապան, Հորձանք** և այլ պատմվածքներում: Դա դաժան ժամանակի անողոք ճշմարտությունն էր: Ա. Ի. Միկոյանը, որը շատ լավ գիտեր այն ժամանակի Դոնի կազակների կյանքը, Մ. Դոնեցկու **Դոնի կազակներ** գրքի առաջաբանում (1926) գրել է. «...Միևնույն ստանիցայի կազակները գտնվում էին տարբեր լագերներում, հանդիպելով քաղաքացիական պատերազմի ռազմաճակատում ոչ թե որպես նույն ստանիցայից եկած բարեկամներ, այլ որպես թշնամիներ: Դա ցույց էր տալիս տեղի ունեցող դասակարգային պայքարի ողջ խորությունը, որը թափանցում էր ամեն մի ստանիցա, նույնիսկ շատ ընտանիքներ, որոնցից, հաճախ, որդին ընկնում էր կարմիրների լագերը, իսկ հայրը՝ սպիտակների»:

Թեև Շոլոխովն ինքն իր առաջին գիրքը անվանել է «գրչի փորձ, գրական ուժերի փորձ», այն նշանակալի երևույթ էր երիտասարդ սովետական գրականության մեջ: Լեհ քննադատ Ռ. Պշիբիլսկին այդ առթիվ պատկերավոր ասել է. «Այն, ինչ արել է երիտասարդ Շոլոխովը, մինչ այսօր էլ զարմացնում է խորությամբ և համարձակությամբ: Ռեալիզմի նորացման համար ճակատամարտը նա վարեց այնպես, ինչպես Նապոլեոնը՝ Աուստերլիցը» («Новая культура». Варшава, 1958, № 48):

**Դոնի պատմվածքներից** հետո լույս է տեսնում Մ. Շոլոխովի պատմվածքների երկրորդ ժողովածուն՝ **Երկնագույն տափաստանը,** որտեղ բացահայտված է սովետական իշխանության համար կազակների աշխատավորական խավերի մղած հեղափոխական պայքարի մարդասիրական էությունը:

Առաջին ժողովածուները սկիզբն էին Շոլոխովի **Խաղաղ Դոն** և **Հերկած խոպան** էպիկական ստեղծագործությունների համար, որոնք էտապային երևույթներ էին ոչ միայն գրողի ստեղծագործության, այլև սովետական ողջ գրականության մեջ:

1925 թ. Մ. Շոլոխովը Մոսկվայից վերադառնում է հարազատ Դոն: «Ուզում էի գրել այն ժողովրդի մասին, որի շրջանում ես ծնվել եմ և որին ես ճանաչում էի»,— խոստովանում էր գրողը, ձեռնամուխ լինելով **Խաղաղ Դոն** վեպի ստեղծմանը, որում մտադիր էր մարմնավորել ժողովրդի և հեղափոխության՝ 20-ական թվականների սովետական գրականության հիմնական թեման: Վեպը գրել է 15 տարի: Գրողի այդ «գլխավոր գիրքը» Մ. Շոլոխովին դասեց ռուս մեծ գրողներ Դոստոևսկու, Տոլստոյի և Գորկու շարքում: Եվ պատահական չէ, որ **Խաղաղ Դոնի** առաջին հատորները լույս տեսնելուց հետո (1928—1929) հաճախ այն համեմատում էին Լև Տոլստոյի **Պատերազմ և խաղաղության** հետ: Նման համադրումը օրինաչափ է և ինքնաբերաբար է ծագում: Ահա այդ կապակցությամբ ինչ է գրում Մ. Շոլոխովի ստեղծագործության խոշոր հետազոտող, պրոֆեսոր Լ. Գ. Յակիմենկոն. «Իրականության երևույթների ընդգրկման լայնությամբ, էպիկական բազմապլանայնությամբ ու պատմելու դրամատիզմով, խոր հոգեվերլուծությամբ **Պատերազմ և խաղաղությունը** և **Խաղաղ Դոնը** ընթերցողների ընկալմամբ միավորվել են որպես հոգեհարազատ ստեղծագործություններ: Ընթերցողը կարծես ակնառու դիտում էր այն մեծ հաջորդականությունը, որը գոյություն ուներ ռուս կլասիկ և իր պատմական ուղին նոր սկսող երիտասարդ սովետական գրականության միջև» (Л. Якименко. Творчество М. А. Шолохова. М., 1964. стр. 108):

Ստեղծելով հեղափոխության մեջ ժողովրդի ճակատագրի մասին մեծա-

գույն էպոպեան, Շոլոխովը դիմում էր նաև Գոգոլի և Գորկու փորձին՝ մարդու նկատմամբ նրանց ունեցած վսեմ հավատին: Ուշագրավ է, որ Մ. Շոլոխովի աշխատանքը «Խաղաղ Դոնի» վրա ընթանում էր **Կլիմ Սամգինի կյանքը** ժամանակագրություն-էպոպեայի վրա Մ. Գորկու աշխատանքի հետ միաժամանակ: Այս երկու ստեղծագործությունները վկայում էին սոցիալիստական ռեալիզմի գրականության՝ սովետական արվեստի հիմնական մեթոդի ուժի ու ծաղկման մասին: «**Խաղաղ Դոնում**,— ասում էր Ա. Տոլստոյը,— Շոլոխովը ծավալել է մի էպիկական, հողի բուրմունքով հագեցած գեղանկարչական կտավ Դոնի կազակների կյանքից: Բայց դա չի սահմանափակում վեպի մեծ թեման. **Խաղաղ Դոնը** իր լեզվով, սրտառուչությամբ, մարդկայնությամբ, ներդաշնակությամբ համառուսական, ազգային, ժողովրդական ստեղծագործություն է»:

Մ. Շոլոխովի վեպ-էպոպեան ընդգրկում է մի տասնամյակ (1912—1922), հագեցված Ռուսաստանում պատմականորեն կարևոր և դրամատիկական իրադարձություններով՝ համաշխարհային պատերազմ, հեղափոխություն և քաղաքացիական պատերազմ: Պատմական իրադարձությունները սերտորեն միահյուսվում են մարդկանց ճակատագրերի հետ: Վեպի գործողությունը տեղի է ունենում Արևմտյան ռազմաճակատում, Պետերբուրգում և Մոսկվայում, բայց գործողության գլխավոր վայրը կազակների ստանիցան է, որտեղ և տեղի են ունենում վեպի հիմնական սոցիալական և անձնական բախումները, բացահայտվում է Դոնի կազակների պատմական ճակատագիրը հեղափոխության ընթացքում:

**Խաղաղ Դոն** վեպի առաջատար թեմաներից մեկն է կուսակցությունը և ժողովուրդը: Վեպում ներկայացված է կյանքի հեղափոխական վերակառուցման համար անձնվիրաբար մարտնչող կոմունիստների մի ամբողջ պատկերասրահ: Դրանք են Պոդտելկովը, Բունչուկը, Շտոկմանը, Կոտլյարովը, Կոշևոյը, Գարանժան, Լագուտինը և ուրիշներ: Ամբողջ վեպը տոգորված է կոմունիստական կուսակցության և ժողովրդի անխզելի կապի գաղափարով: Վեպի հերոսներից շատերը իրական մարդիկ են, հեղափոխության և քաղաքացիական պատերազմի մասնակիցներ, մի բան, որ վեպին տալիս է պատմական վավերականության բնույթ: Դրանք են, մասնավորապես, Դոնի Ժողկոմսովետի նախագահ Ֆյոդոր Պոդտելկովը, նրա մարտական զինակիցներ Յակով Լագուտինը և Միխայիլ Կրիվոշլիկովը: Շոլոխովը ցույց է տվել, որ ժողովրդի կյանքն ինքն է առաջադրում, ծնում հեղափոխության մարտիկներ: Հեղափոխության անհաղթելիությունը **ժողովրդի ուժի** մեջ է: Սա վեպի ամենակարևոր մտքերից մեկն է:

**Խաղաղ Դոնի** բոլոր կոմունիստներից առավել ակնառու Միխայիլ Կոշևոյն է: Նա հետաքրքրական է նրանով, որ նրա կերպարում ցույց է տրված ժամանակի դաժան պայմաններում կոմունիստի բնավորության ձևավորման ընթացքը: Կոշևոյն ուղղակի հակադրված է Գրիգորի Մելեխովին: Նրանք խորթ է ստանիցայի իր ընկերոջ տատանումը: Նրանց ճանապարհները շուտով ընդմիշտ բաժանվում են: Կոշևոյը հաստատ համոզված է, որ կյանքի ճշմարտությունը հեղափոխության և նոր կյանքի թշնամիների դեմ անհաշտ պայքարն է:

**Խաղաղ Դոնում** պատկերված դրամատիկական դարաշրջանն առավել վառ գույներով ցույց է տրված Մելեխովների ընտանիքի քայքայման պատմությամբ, որը խորհրդանշում է կյանքի ամբողջ սեփականատիրական կացութաձևի կործանումը: Դրանում է դարաշրջանի պատմական օրինաչափությունը, որ ճշմարտացիորեն պատկերել է Մ. Շոլոխովը՝ որպես ռեալիստ գրող: **Խաղաղ Դոնի** անգլերեն հրատարակության առաջաբանում հեղինակը գրել է. «...անգլիական մամուլի կարծիքներում ես հաճախ եմ լսում կշտամբանք իրականությունը «անողոք» ցույց տալու մեջ... Վատ կլիներ այն գրողը, որը գունազարդեր իրականությունը, ուղղակի վնաս հասցնելով ճշմարտությանը, և խնայեր ընթերցողի զգայնությունը՝ նրան հարմարվելու կեղծ ցանկությունից»:

Եվ, գուցե, ամբողջ սովետական գրականության մեջ ամենից «անողոք»



և ամենից ճշմարտացի վեպը **Խաղաղ Դոնն** է: Պատահական չէ, որ մինչև
հիմա էլ վեճեր է առաջացնում Գրիգորի Մելեխովի ողբերգական կերպարը:
Եվ, հակառակը, պոլեմիկական ոգևորության մեջ քննադատ Վ. Վ. Պետելի-
նը համաշխարհային գրականության անմահ կերպարներ Համլետի, Դոն-Քի-
շոտի, Ֆաուստի կողքին դնում է նաև շոլոխովյան Գրիգորի Մելեխովին,
նրան անվանելով «գեղարվեստական հանճարեղ միաձույլ կերպար» (Виктор
Петелин. Гуманизм Шолохова. М., 1965, стр. 494): Քննադատի տե-
սակետը թեև անվիճելի չէ, բայց ստիպում է խորհրդածել և արժանի է խոր
ուշադրության: Նրա կարծիքով, Գրիգորի Մելեխովը, անցնելով Դանթեի
դժոխքի բոլոր տանջարանները, չի կորցրել այն կենդանի հատկությունները,
որոնք մարդուն մարդ են դարձնում և թողնում մի հույս, որ հերոսը վերջիվեր-
ջո կհայտնվի հեղափոխության լագերում:

Մելեխովի ընտանիքի դրաման, որ պատկերված է վեպում, և Գրիգորի
Մելեխովի տատանումներն իրենց հիմքում ունեն սոցիալական հող: Դրանք
կապված են դեռևս անցյալից, իրենց սեփականությունից կառչած կազակների
միջին խավերի տատանումների հետ: Գրիգորիի ողբերգական և հակասական
ճակատագիրը գեղարվեստական ճշմարտության ցնցող ուժով երևան է բերում
այդ օրինաչափությունը: Գրիգորիի տառապանքները ծանր են, տանջալի
(հատկապես սիրելի կնոջ՝ Ակսինյայի մահից հետո): Բայց նա ուժեղ բնավո-
րություն է, չի կորցնում բարոյական ուժերը և հուսահատության չի մատնվում:
Դրա շնորհիվ նա գիտակցում է, որ հին ձևով ապրել չի կարելի, հարկավոր
է ապրել նորովի: Նրա մեջ մարմնավորված են այն մարդու տիպական գծե-
րը, որն անցել է կյանքի բովով, բայց չի կորցրել հավատն իր նկատմամբ:
Վեպի վերջում Գրիգորի Մելեխովը, ծանր տառապանքներ ու անլուր զըր-
կանքներ կրելով, վերադառնում է հայրենական տուն, և նրան համակում է
ուրախության զգացումը որդու հետ ունեցած հանդիպումից: Նա իր մեջ ուժ է
գտնում վերադառնալու այնտեղ, որտեղից նրան հեռացրել էր ճակատագիրը:

**Խաղաղ Դոնի** հետ միաժամանակ Մ. Շոլոխովն աշխատում էր երկրորդ
նշանակալի ստեղծագործության՝ **Հերկած խոպան** վեպի վրա (1932, 1960):
Վեպը, որ նա գրել է գյուղում տեղի ունեցած իրադարձությունների վառ տպա-
վորության տակ, դարձավ կոլեկտիվացման բարդ տարիների մի յուրատեսակ
գեղարվեստական տարեգրություն: «Պրավդայում» հրապարակված գրախո-
սության մեջ (1933 թ. մարտի 3) ասված է. «Շոլոխովի վեպը կարող է ծա-
ռայել իբրև մի յուրատեսակ դասագիրք գյուղի մասին»:

**Հերկած խոպանը Խաղաղ Դոնի** տրամաբանական շարունակությունն էր:
Բայց այժմ հեղինակի ուշադրության կենտրոնում են նոր մարդիկ՝ Դավիդովի,
Նագուլնովի, Ռազմետնովի նման կոմունիստները, որոնք հերկում են կազակնե-
րի հողի դարավոր խոպանը և կառուցում նոր կյանք: Հեղինակի մեծ հաջո-
ղությունն է կոմունիստ Սեմյոն Դավիդովի կերպարը. նա եղել է պուտիլովյան
բանվոր և մեկը այն քսանհինգ հազար կոմունիստներից, որոնց կուսակցու-
թյունն ուղարկել էր գյուղում աշխատելու: Ճշմարտացիորեն է պատկերված
միջակ գյուղացի Կոնդրատ Մայդաննիկովը, որը, հաղթահարելով մասնավոր
սեփականատիրական նախապաշարմունքները, համոզվում է, որ իր ընտրած
ուղին ճիշտ է: Շոլոխովը նկարագրում է դասակարգային պայքարի բարդ
պատկերը Դոնում՝ կոլեկտիվացման շրջանում, մերկացնում է կուլակային և
սպիտակգվարդիական հակահեղափոխական գործիչներին (Պոլովցև, Օստ-
րովնով):

Վեպում ժողովրդական անկեղծ հումորով է պատկերված Շչուկար պապի
կերպարը, որի շուրջը ևս վեճեր են լինում: Բայց հանրահայտ է, որ նա վեպի
առավել ցցուն և կոլորիտային կերպարներից մեկն է: Ոչ առանց հիմքի, նրան
համեմատում են համաշխարհային գրականության ուրախ, չվհատվող հերոս-
ների՝ Սանչո Պանսայի, Թիլ Ուլենշպիգելի, Կոլա Բրյունյոնի, զինվոր Շվեյկի
կերպարների հետ: Ֆրանսիացի կոմունիստ քննադատ Ժան Կատալան, ա-
ռարկելով նրանց, ովքեր Շոլոխովին կշտամբում էին, որ իբր անչափ շատ
տեղ է հատկացրել Շչուկարի կերպարին (հատկապես երկրորդ գրքում), ար-

դարացիորեն ասել է. «Ո՞վ է Ծչուկար պապը: Մի շատախոս, որովհետև հանույք է զգում խոսքերից: Մի ստախոս, որովհետև ցանկանում է գունազարդել իրականությունը: Միշտ և ամեն բանում հիմարացած, որովհետև մաքուր է երեխայի նման: Նա ծնվել է բանաստեղծ, անձամբ այդ չգիտակցելով: Եվ առանձին պահերի նա մոտենում է իսկական պոեզիային... Նրա մեջ Շոլոխովը դրել է հասարակ մարդկանց սրտերում սքանչելի հատկություններ կռահելու ունակություն» («Новый мир», 1960, № 5, стр. 217): Հումորը, հակումը դեպի կատակը Շոլոխովի տաղանդի վառ գծերից մեկն է: Զավեշտական դեպքերը նա սևեռում է ոչ թե ընթերցողին պարզապես ծիծաղեցնելու համար: Գրողի հումորը թելադրված է իր հերոսների որոշ թերությունները ուղղելու կրքոտ ցանկությամբ: Դա «ազնիվ հումոր է» (Բելինսկի):

**Հերկած խոպան** վեպի ավարտը ողբերգական է. զոհվում են գլխավոր հերոսներ Դավիդովը և Նագուլնովը: Բայց վեպի ողբերգական ֆինալը չի ճնշում ընթերցողի հոգին, թեպետ նա ընդհանրապես ծանր է ապրում իր սիրած հերոսների մահը: Անդրադառնալով **Հերկած խոպան** վեպի երկրորդ գրքին, Շոլոխովը 1955 թվականին ասում էր. «...ֆինալը կլինի դրամատիկական, կլինեն զոհեր... Բայց ժամանակն էր դաժան. մղվում էր ոչ թե կենաց, այլ մահու կռիվ, և զոհեր քիչ չեղան»: «Բայց,—նկատում է նա,—հաղթանակում է նորը, հաղթանակում է կոլտնտեսային կարգը, սոցիալիզմը...»:

Հայրենական մեծ պատերազմի տարիներին Մ. Շոլոխովը, ինչպես և սովետական շատ գրողներ, մեկնում է բանակ, դառնում «Պրավդայի» զինվորական թղթակից: Պատերազմի արդեն առաջին օրերին նա հրապարակում է **Դոնում, Սմոլենսկի ուղղությունում, Հարավում, Կազակներ** և այլ ակնարկներ: Լայն համբավ ձեռք բերեց նրա **Ատելության գիտությունը** (1942) պատմվածքը՝ տոգորված ֆաշիզմի նկատմամբ այրող ատելությամբ և կրքոտ հայրենասիրությամբ:

1943—1944 թվականներին «Պրավդա» և «Կրասնայա զվեզդա» լրագրերում սկսում են տպագրվել Մ. Շոլոխովի **Նրանք մարտնչել են հայրենիքի համար** վեպի գլուխները: Այս վեպի վրա հեղինակն աշխատել է նաև հետպատերազմյան տարիներին: Բացահայտելով վեպի մտահղացումը, Մ. Շոլոխովն ասում է. «Ինձ հետաքրքրում է հասարակ մարդկանց բախտը անցած պատերազմում: Մեր զինվորը Հայրենական պատերազմի օրերին իրեն ցույց տվեց որպես հերոս: Ռուս զինվորը, նրա արիությունը, նրա սովորովյան հատկությունները հայտնի են աշխարհին: Բայց այս պատերազմը մեր զինվորին ցույց տվեց նաև բոլորովին այլ կողմերով: Ես էլ հենց ցանկանում եմ վեպի մեջ բացահայտել սովետական մարտիկի նոր հատկությունները, որոնք նրան այնքան բարձրացրին այս պատերազմում...»: Հենց այդպիսի հասարակ մարտիկներ են ցույց տրված վեպում: Դրանք են Լոպախինը, Զվյագինցևը, Ստրելցովը, Պոպրիշչենկոն և ուրիշներ, որոնց միջոցով հեղինակը բացահայտում է ժողովրդի սխրանքը պատերազմի տարիներին:

Հիրավի, համաշխարհային համբավ ձեռք բերեց Մ. Շոլոխովի **Մարդու ճակատագիրը** պատմվածքը (1956): Անդրեյ Սոկոլովի ճակատագրում դրսևորված է ռուս ժողովրդի ոգու մեծությունը, սովետական մարտիկի բարոյական բարձր հատկությունները, նրա մարդասիրությունը: **Ատելության գիտությունը** պատմվածքի հերոս Վիկտոր Գերասիմովի նման, Անդրեյ Սոկոլովն անցնում է ծանր փորձություններով, որոնք, սակայն, չեն կոտրում նրա կամքը և կյանքի ծարավը: Թվում է, թե ամեն ինչ կորած է և այլևս իմաստ չունի ապրել: Բայց հանդիպումն իր նման որբացած փոքրիկ Վանյայի հետ նրան վերադարձնում է կյանք, որը լցվում է նոր բովանդակությամբ և նոր իմաստով: Փոքրիկ տղայի նկատմամբ Սոկոլովի ունեցած վերաբերմունքի մեջ արտահայտված է մարդասիրության հաղթանակը, որը չէր կարելի ոչնչացնել ո՛չ պատերազմով, ո՛չ ծանրագույն կորուստներով: Էմոցիոնալ ներգործության ուժով և ապրումների հոգեբանական խորությամբ Մ. Շոլոխովի **Մարդու ճակատագիրը** պատմվածքը համեմատում են Է. Հեմինգուեյի **Ծերունին և ծովը** վիպակի հետ: Դրանց միավորում է մարդասիրական ընդհանուր պաթոսը:



Մ. Շոլոխովի ստեղծագործությունները արվեստի՝ կինոյի, թատրոնի, հեռուստատեսության շնորհիվ երկրորդ կյանք ստացան: «Խաղաղ Դոն», «Հերկած խոպան», «Մարդու ճակատագիրը», «Դոնի պատմվածքներ» և վերջերս նկարահանված «Նրանք մարտնչել են հայրենիքի համար» ֆիլմերը հարըստացրին մեր պատկերացումները Մ. Շոլոխովի ստեղծագործության մասին, ավելի շատ տարածեցին նրա համբավը:

Միխայիլ Շոլոխովի ստեղծագործությունները թարգմանվել են աշխարհի ժողովուրդների շատ լեզուներով: Նա ամենից շատ ընթերցվող սովետական գրողն է: Նրա բոլոր խոշոր ստեղծագործությունները թարգմանվել են նաև հայերեն: 1949—1951 թվականներին հրատարակվեց **Խաղաղ Դոն** վեպը չորս հատորով՝ Հ. Մազմանյանի թարգմանությամբ: Երեք անգամ հրատարակվել է **Հերկած խոպան** վեպը. 1933 թվականին՝ Մկրտիչ Արմենի, 1937 և 1960 թվականներին՝ Հ. Հարությունյանի թարգմանությամբ: 1942 թվականին հայ ընթերցողը ծանոթացավ Մ. Շոլոխովի **Ատելության գիտությունը** (թարգմ.՝ Վ. Միքայելյան), իսկ 1957 թվականին՝ **Մարդու ճակատագիրը** (թարգմ.՝ Մ. Արմեն) պատմվածքներին:

Մ. Շոլոխովը իսկական ինտերնացիոնալիստ գրող է: Հայտնի են նրա բարեկամական կապերն ու նամակագրությունը եղբայրական հանրապետությունների գրողների հետ, նրա ասույթները ՍՍՀՄ ժողովուրդների, այդ թվում և հայերի, մշակույթի մասին: 1954 թվականին, երբ նշվում էր Միքայել Նալբանդյանի ծննդյան 125-ամյակը, Շոլոխովը Վյոշենսկայա ստանիցայից ուղարկեց մի հեռագիր՝ հետևյալ բովանդակությամբ.

«Ռուս ժողովուրդը խորապես հարգում է հայ ժողովրդի լուսավորչի, աշխատավոր ժողովրդի երջանկության համար պայքարող բոցաշունչ մարտիկի, հեղափոխական դեմոկրատի, Բելինսկու և Չեռնիշևսկու, Գերցենի և Օգարյովի համախոհին՝ Միքայել Նալբանդյանին:

Ազգությամբ հայ, նա իմ հայրենակիցն էր և ես խոնարհում եմ գլուխս հայ ժողովրդի մեծ զավակի անունի առջև և մտովին կրկնում նրա խոսքերը.

— Ազատությո՛ւն,— գոչեցի,—
Թող որոտա իմ գլխին
Փայլակ, կայծակ, հուր, երկաթ,
Թող դավ դնե թշնամին,
Ես մինչ ի մահ, կախաղան,
Մինչև անարգ մահու սյուն,
Պիտի գոռամ, պիտ կրկնեմ
Անդադար ազատությո՛ւն»:

Մ. Շոլոխովն ամենաանմիջական հետաքրքրություն էր ցուցաբերում հայ ժողովրդի պատմության, մշակույթի և գրականության նկատմամբ: Ռոստովցի գրող և ժուռնալիստ, ազգությամբ հայ Միխայիլ Անդրիասովը պատմում է Մ. Շոլոխովի հետ իր ունեցած զրույցի մասին: Խոսք է բացվել Ավետիք Իսահակյանի մասին: Միխայիլ Ալեքսանդրովիչն ասել է. «Ավետիք Իսահակյանն այն սակավաթիվ գրողներից մեկն է, որն արժանացել է ամենամեծ ճանաչման՝ ժողովրդի ճանաչմանը: Մեծ բանաստեղծը գրել է այնպես, ինչպես ապրում և պայքարում է իր հարազատ ժողովուրդը. ջերմորեն, կրքոտությամբ ...Եթե սիրում է, ապա նվիրվածությամբ, անձնվիրաբար»:

Շոլոխովի գրադարանում պահվում է Վարպետի ընտիր երկերի միհատորյակը՝ ընծայագրով. «Ամենասքանչելի ու սիրելի գրողին, ինձ կախարդող, անմահ **Խաղաղ Դոնի** հեղինակին»:

Ստանալով **Խաղաղ Դոնի** հայերեն չորս հատորները, Շոլոխովն ասել է. «Այս համեստ նվերը խնդրում եմ հանձնեք մեծարգո Ավետիք Իսահակյանին: Ես դա պետք է անեի զգալիորեն ավելի շուտ, դեռ այն բանից առաջ, երբ նա ինձ էր ուղարկել իր միհատորյակը: Ասեք նրան, որ մեր Դոնի կազակները գիտեն և սիրում են իսահակյանական թովիչ լիրիկան: Դյուցազնական, քաջառողջություն եմ ցանկանում նրան, այնպիսի առողջություն, ինչպիսին ունեցել է առասպելական Սասունցի Դավիթը» (Михаил Андриасов. Сын Тихого Дона. М.,1969, стр. 120—121):

Այժմ, երբ մենք պատրաստվում ենք նշելու Ավետիք Իսահակյանի ծննդյան 100-ամյակը, առանձնապես հաճելի է հիշեցնել ռուս մեծ գրողի այդ ջերմ խոսքերը՝ ուղղված մեր Վարպետին:

Շոլոխովի հիշողության մեջ վառ տպավորվել է ռազմաճակատում պատահած մի դեպք, որի մասին նա պատմել է դարձյալ Մ. Անդրիասովին.

«Դա պատահեց 1942 թվականին: Հարավային ռազմաճակատում թեժ մարտեր էին: Այնտեղ կար կրծքից ծանր վիրավոր սևաչյա մի տղա: Օ՜հ, որքան չէր ուզում նա հեռանալ կյանքից: Իսկ վիճակն աստիճանաբար ավելի անհուսալի էր դառնում: Սկզբում նա դեռ խոսում էր: Իր ռուս բարեկամ, կրտսեր լեյտենանտին հանձնեց դաշտային պայուսակը, մոր, կնոջ, երեխաների լուսանկարները, նամակները և խնդրեց այդ ամենն ուղարկել հարազատներին: Խոսում էր նա ռուսերեն, կովկասյան մեղմ առոգանությամբ, բայց երբ ուժերը վերջնականապես լքեցին նրան, ուշագնացության մեջ նա սկսեց խոսել մայրենի լեզվով. «Չէ... չէ...»,— ուժերը լարելով բղավում էր նա հոգևարքի հուսահատության մեջ: Բայց ահա նա լռեց... Այդ խիզախ տղան վաշտի հրամանատար էր: Հետևակայինները շատ էին սիրում ու ողբում նրա կորուստը: Իրենց հրամանատարի մարմինը նրանք զգուշությամբ տարան խրամատ, իսկ հետո գնացին մարտի... Շատ տարիներ հետո ինձ բացատրեցին հայերեն «Չէ... չէ» բառերի իմաստը: Չցանկանալով բաժանվել կյանքից, բոլորի հետ միասին ձգտելով հաղթանակի, նա վճռականորեն կրկնում էր. «Չէ... չէ...» (նույն տեղը, էջ 121—122):

Մ. Շոլոխովը այն ռուս ականավոր գրողներից է, որոնց ստեղծագործությունը բարերար ազդեցություն է ունեցել եղբայրական ժողովուրդների գրականությունների զարգացման վրա: Դա առանձնապես վերաբերում է **Հերկած խոպան** վեպին: Սովետական բազմազգ գրականության մեջ կան գյուղի կոլեկտիվացման թեմայով գրված բազմաթիվ ստեղծագործություններ: Իհարկե, տեղական իրադարձությունները, կոլտնտեսային շինարարության առանձնահատկությունները հանրապետություններում իրենց կնիքն էին թողնում այդ ստեղծագործությունների վրա: Բայց դրանք բոլորն էլ մոտ են իրար իրենց պաթոսով՝ նոր կյանքի ստեղծման, սոցիալիստական հասարակարգի կառուցման ժամանակաշրջանում գյուղացիության վերադաստիարակման պաթոսով: Մ. Շոլոխովի **Հերկած խոպանն** այս իմաստով մի գաղափարական-գեղագիտական «ուղենիշ» է եղել այն ժամանակվա գյուղի մասին գրած շատ հեղինակների, այդ թվում և **Հացավան** վեպի հեղինակ Նաիրի Զարյանի համար: 1955 թ. հունվարի 10-ին Մ. Շոլոխովին հղած իր նամակում Ն. Զարյանը գրել է. «Մենք դաստիարակվել ենք ռուսական հումանիզմով՝ սկսած Պուշկինից մինչև Գորկի ու Շոլոխով...»:

Միխայիլ Շոլոխովի ստեղծագործությունը տոգորված է իսկական սոցիալիստական հումանիզմով, աշխատավոր մարդու նկատմամբ խոր սիրով: Այս առթիվ շատ լավ է ասել Գուրգեն Բորյանը: Իր ռազմաճակատային ընկերոջը հղած նամակում նա գրել է. «Մեզ մոտ՝ Հայաստանում, դեռ վաղուց, պեհեր ժամանակներից, գրողի անունը նույնացնում էին Սերմնացանի անվան հետ... Հայաստանում Միխայիլ Շոլոխովին մենք կանվանեինք մեծ Սերմնացան: Շոլոխովյան ակոսները սկսվում են արդեն սրբազան դարձած Վյոշենսկայա ստանիցայից և գնում անծայրածիր հեռուները՝ երկրագնդի բոլոր ծայրերը... Բայց Շոլոխովը ոչ միայն Սերմնացան է: Նա միաժամանակ մի հեքիաթային վարպետ բրուտ է, որը ծեփակերտել է այն հրաշագործ թասը, որին թեթևակի հպվելն անգամ մարդուն դարձնում է ֆիզիկապես ու հոգեպես ուժեղ, որը չի վախենա վեճի բռնվելու անգամ աստվածների հետ»:

Արվեստի մեջ որպես նման «մեծ Սերմնացան» և «վարպետ բրուտ» էլ Միխայիլ Ալեքսանդրովիչ Շոլոխովը հավերժ կմնա սերունդների հիշողության մեջ, ինչպես հավերժ գոյություն ունեն աշխատանքն ու ստեղծագործումը: Եվ մենք հպարտանում ենք, որ նրա ժամանակակիցն ենք՝ կոմունիզմի ստեղծման մեծ դարաշրջանի ժամանակակիցը:

---



# ՔԱՂՈՒՍՈՒՑՄԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԴԵՄՔԸ

Ա. Վ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և
ագիտացիայի սեկտորի վարիչ

*ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ կուսակցական պրոպագանդայի կարևորագույն ու առաջնահերթ խնդիրն է: ՍՄԿԿ XXIV համագումարը խորապես հիմնավորեց զարգացած սոցիալիզմի պայմաններում գաղափարա-դաստիարակչական աշխատանքի՝ որպես հասարակության զարգացման, գիտատեխնիկական և սոցիալ-տնտեսական առաջընթացի արագացման հզոր միջոցի, հարաճուն նշանակությունը: Այս առումով կուսկազմակերպությունների առջև խնդիր դրվեց՝ կոմունիստներին, սովետական բոլոր մարդկանց դաստիարակել բարոյա-քաղաքական բարձր հատկանիշներով, նրանց զինել մարքս-լենինյան հեղափոխական տեսությամբ, աշխատավորության հոծ զանգվածների մեջ ձևավորել կոմունիստական աշխարհայացք: Համագումարը պահանջեց է՛լ ավելի ամրապնդել կուսակցական պրոպագանդայի, քաղուսուցման կապը կոմունիստական շինարարության կոնկրետ խնդիրների հետ, որպեսզի դրանք առավել արդյունավետ ներգործեն աշխատավորների գիտակցության, քաղաքական ու աշխատանքային ակտիվության աճի վրա, որպեսզի առավելագույն չափով մոբիլիզացվեն նրանց ուժերը՝ իններորդ հնգամյակի առաջադրանքների անթերի կատարման համար:*

*Համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվության մեջ Լ. Ի. Բրեժնևն այսպես բնորոշեց կուսակցության պրոպագանդիստական աշխատանքի խնդիրները. «Ինչպես հարկն է կարողանալ աշխատավորության հոծ զանգվածներին լիակատար չափով հաղորդել մեր գաղափարական համոզվածության ամբողջ ուժը, ինչպես հարկն է իսկապես ստեղծագործաբար մոտենալ սովետական մարդու կոմունիստական դաստիարակության գործին՝ ահա թե որոնք են մեր գլխավոր խնդիրները այդ բնագավառում»* (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութեր, *էջ 120): Այդ խնդիրների լուծման գործում վճռական դեր են խաղում նաև պրոպագանդիստական կադրերը: «Բելոռուսիայի կուսակցական կազմակերպությունում գաղափարական կադրերի ընտրության և դաստիարակության ասպարեզում կատարվող աշխատանքի մասին» որոշման մեջ ՍՄԿԿ Կենտկոմը կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց պրոպագանդիստների վարպետության աճի, նրանց բազմակողմանի զարգացման հարցերի վրա:*

*Կուսակցությունը պահանջում է պրոպագանդիստական գործունեության մեջ ներգրավել կուսակցության գործին անսահմանորեն նվիրված, նրա քաղաքականությունը խորապես ըմբռնող, հեղափոխական տեսությամբ զինված, քաղաքական և կուլտուրական լայն մտահորիզոն ունեցող մարդկանց: Ահա թե ինչու նա մշտական հոգատարություն է ցուցաբերում պրոպագանդիստական կադրերի ընտրության ու դաստիարակության նկատմամբ: Վ. Ի. Լենինը,*

մեծ նշանակություն տալով այդ գործին, նշում էր. «Իրոք սկզբունքորեն տոկուն և ընդունակ պրոպագանդիստներ շատ քիչ կան (և այդպիսին դառնալու համար հարկավոր է կարգին սովորել և փորձ կուտակել), և այդպիսի մարդկանց հարկավոր է մասնագիտացնել, ամբողջովին զբաղեցնել ու խիստ պահպանել նրանց» (Երկեր, հ. 6, էջ 299)։ Ելնելով լենինյան ցուցումներից՝ տասնյակ տարիների ընթացքում կուսակցությունը դաստիարակել և աճեցրել է պրոպագանդիստական կադրերի բազմամիլիոն բանակ։

ՔԱՂԱՔԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՄԱՆ ՄԵՋ ԱՄԵՆԱԿԱՐԵՎՈՐԸ պարապմունքների գաղափարական բարձր մակարդակն է, դրանց արդյունավետությունը, իսկ այդ ամենն ապահովելու համար, ինչպես պահանջվում է ՍՄԿԿ Կենտկոմի հիշյալ որոշմամբ, պրոպագանդիստը (ինչպես և գաղափարական ոլորտի բոլոր կադրերը) պարտավոր է ամենօրյա քրտնաջան աշխատանքով հարստացնել իր գիտելիքները, սիստեմատիկաբար ու խորապես ուսումնասիրել մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները, կուսակցության ներքին և արտաքին քաղաքականության պրոբլեմները։ Միաժամանակ նա պետք է իրազեկ լինի տեղական կուսկազմակերպության և աշխատանքային կոլեկտիվի առջև ծառացած տնտեսական ու քաղաքական խնդիրներին, հետևողականորեն տիրապետի կուսակցական պրոպագանդայի արվեստին, մարքս-լենինյան տեսությունը, կոմունիստական իդեալների պրոպագանդան շաղկապի պրակտիկ խնդիրների լուծման հետ, ակտիվորեն պաշտպանի նորն ու առաջավորը։

Պրոպագանդիստը կոչված է սեմինարների ու քաղդպրոցների պարապմունքներում կոմունիստներին և անկուսակցականներին սովորեցնել ստեղծագործաբար մտածել, բազմակողմանի վերլուծել կյանքի երևույթները, ստացած գիտելիքները հմտորեն կիրառել կյանքում։

Ունկնդիրների ինքնուրույն քաղաքական մտածելակերպի մշակումը, կոմունիստական շինարարության պրակտիկ խնդիրների լուծման գործում նրանց ակտիվության ապահովումը պրոպագանդիստի կարևորագույն խնդիրներից են. այդպիսի հատկանիշներն ինքնին չեն դաստիարակվում, դրանք ձեռք են բերվում սովորելով, աշխատանքային պրակտիկայում։ Բազմակողմանիորեն ներգործելով մարդկանց գիտակցության վրա՝ պրոպագանդիստն օգնում է նրանց մտահորիզոնի ընդլայնմանը, գաղափարական համոզմունքի և աշխարհայացքի մշակմանը։

Պրոպագանդիստի ուշադրության կենտրոնում պետք է գտնվի յուրաքանչյուր ունկնդիր՝ իր աշխարհայացքով, հասարակական շահերի նկատմամբ ունեցած գիտակցական վերաբերմունքով։

Տեսական սեմինարին, քաղդպրոցի ամեն մի պարապմունքին պրոպագանդիստի նախապատրաստվելն այն վճռական պայմանն է, որն ապահովում է ուսուցման գաղափարա-տեսական բարձր մակարդակը։ Խելամիտ, փորձառու պրոպագանդիստը բազմակողմանի է պատրաստվում պարապմունքին, նախապես մտածում, թե ուսումնասիրվող թեմայի մեջ ի՞նչ հարցեր է առաջադրելու, ո՞րն է գլխավորը, ինչպե՞ս է նյութը կապակցելու պրակտիկ խնդիրներին։ Իր գործը սիրող պրոպագանդիստը մոտիկից ուսումնասիրում է ունկընդիրներին, ծանոթանում նրանց աշխատանքային հաջողություններին, հետաքրքրություններին, հուզող հարցերին։

Մեր պրոպագանդիստներից շատերը յուրացրել և ճիշտ են կիրառում կուսակցական պրոպագանդայի սկզբունքները, ապահովում են դրա արդյունավետությունը։ Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանում, օրինակ, 12 տարի առաջ պրոպագանդիստի պատվավոր և դժվարին գործը հանձնարարվեց նաև ինժեներ Է. Գրիգորյանին։ Այդ ժամանակամիջոցում նա իր համառությամբ ու ջանասիրությամբ հաղթահարեց շատ դժվարություններ, հարստացրեց իր գիտելիքները, ծանոթացավ պրոպագանդիստական աշխատանքի առանձնահատկություններին։ Նա գաղափարապես կոփվեց, ձեռք բերեց արտադրական կոլեկտիվի ղեկավարման փորձ ու հմտություն։ Եվ այդ ամենի համար նրան վստահեցին արդյունաբերական այդ խոշոր ձեռնարկության ղեկավարումը։ Աշխատանքի մասշտաբները փոխվեցին, բայց հասարակական



գործունեությունը նա այսօր էլ իր առաջնահերթ խնդիրն է համարում։ Է. Գրիգորյանը խնամքով է նախապատրաստվում ունկնդիրների հետ յուրաքանչյուր հանդիպմանը, պարապմունքի ընթացքում տեսական հարցերի քննարկումն ու լուսաբանումը, որպես կանոն, հիմնավորում է կյանքից, առավել ևս իրենց գործարանից վերցրած կոնկրետ փաստերով, օգտագործում նյութի յուրացմանը նպաստող դիագրամներ, պլակատներ, ալբոմներ, աղյուսակներ և ուսուցողական այլ պարագաներ։

Ուսումնասիրելով արտադրության գիտական կառավարման հիմունքները՝ պրոպագանդիստը և սեմինարի ունկնդիրները գլխավոր ուշադրությունը նվիրում են կառավարման կատարելագործման հարցերին, վերլուծում ձեռնարկության առանձին արտադրամասերի տնտեսական գործունեության արդյունքները։ Ուսուցման նման մեթոդն օգնում է որոնելու և գտնելու կառավարման կատարելագործման, արտադրության արդյունավետության բարձրացման ուղիներ։ Գործնական խելամիտ առաջարկները հաշվի են առնվում, արմատավորվում պրակտիկայում։ Սեմինարի բոլոր ունկնդիրներն ակտիվորեն մասնակցում են արտադրության հարցերի քննարկմանն ու լուծմանը։ Ունկնդիր, կոնստրուկտորական բյուրոյի պետ Հ. Եղիկյանն իր առաջարկներով նպաստեց գործարանում նոր տեխնիկայի ներդրմանը։ Նրա անմիջական մասնակցությամբ ու ղեկավարությամբ կազմակերպվեց 5 նոր տիպի հաստոցների սերիական արտադրությունը, մշակվեցին և կիրառվեցին տեխնոլոգիական 30 նոր պրոցեսներ։ Այդ գործին մեծապես օգնեց նաև սեմինարի մեկ այլ ունկնդիր՝ № 3 արտադրամասի ավագ տեխնոլոգ Ռ. Եղիկյանը։

Հետևելով պրոպագանդիստի օրինակին՝ տեսական սեմինարի քաղաքականապես հասուն, հարուստ գիտելիքներ ունեցող ունկնդիրները մասնակցում են գործարանում տարվող գաղափարական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքներին, նրանցից մի քանիսը քաղինֆորմատորներ և ագիտատորներ են։

Պրոպագանդիստ Է. Գրիգորյանի գործունեության մեջ զուգորդվում են քաղաքական և կազմակերպչական լավագույն հատկանիշները։ Նա ոչ միայն արտադրության ղեկավար է, այլև քաղաքական դաստիարակ, մշտապես զբաղվում է կոլեկտիվի անդամների դաստիարակության, նրանց ընդհանուր զարգացման և մասնագիտական որակավորման բարձրացման հարցերով։ Նա հաճախ է լինում գործամասերում, հետաքրքրվում բանվորներին հուզող հարցերով։ Նման հոգածությամբ պետք է բացատրել, որ գործարանի 27 բանվորներ տարիների ընթացքում կոփվել և դարձել են ինժեներներ ու տեխնիկներ, արտադրամասերի ու բաժինների պետեր։ Նրանց թիվը կազմում է այդ կատեգորիայի աշխատողների կեսից ավելին։

Քաղաքական և տնտեսագիտական կրթության պատշաճ կազմակերպումը, պրոպագանդիստների ակտիվ գործունեությունը ևս վճռական դեր են խաղացել ձեռնարկությունում փոխադարձ հարգանքի մթնոլորտի ստեղծման, աշխատանքից բացակայելու և ուշանալու դեպքերի վերացման, արտադրության ռիթմիկ ընթացքի ապահովման գործում։ Այդ ամենը, անշուշտ, դրականորեն է ներգործում արտադրական ցուցանիշների բարձրացման վրա։ Արդեն տասնյոթ եռամսյակ է, ինչ գործարանն անընդմեջ մրցանակային տեղեր է գրավում համամիութենական սոցմրցության մեջ։ Ընդ որում, վերջին յոթ եռամսյակներում գրավել է առաջին տեղը՝ նվաճելով ՍՍՀՄ հաստոցաշինության մինիստրության և ճյուղային արհմիության կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը։

Կուսակցական պրոպագանդիստին բնորոշ են բարձր սկզբունքայնությունը, անհաշտ պայքարը մարքսիզմ-լենինիզմից կատարվող ամենափոքր իսկ շեղումների դեմ, կուսակցության գաղափարները մասսաների մեջ գրավիչ ու հասկանալի տարածելու հմտությունը։ Պրոպագանդիստի խոսքը պետք է լինի կրքոտ, անկեղծ, ունենա տրամաբանական հետևողականություն, որպեսզի համոզի ունկնդիրներին։ Կեղծ խոսքը ներգործուն, վարակիչ լինել չի կարող։ Անհրաժեշտ է պարզ ու հստակ ձևակերպել ելույթի գլխավոր միտքը և այն հիմնավորել մի քանի դիպուկ փաստարկներով։ Այդ տեսակետից մեր պրոպագանդիստները պետք է խորապես ուսումնասիրեն մեծ Լենինի պրոպագան-

դիստական գործունեության ձևերն ու մեթոդները, մասսաների հետ տարվող նրա աշխատանքի հոյակապ փորձը։

Վ. Ի. Լենինը պրոպագանդիստներից ու ագիտատորներից պահանջում էր լինել մասսաների մեջ, ապրել նրանց կյանքով, իմանալ նրանց տրամադրությունները, հասկանալ ժողովրդին, նվաճել նրա անվերապահ վստահությունը, ճիշտ պարզաբանել նրան հուզող հարցերը։ Ն. Կ. Կրուպսկայան իր հուշերում վկայում է, որ Վ. Ի. Լենինը ելույթի, զրույցի ընթացքում հաշվի էր առնում, թե տվյալ պահին ի՞նչն է հուզում լսարանին, ընդառաջում էր ունկնդիրների հետաքրքրասիրությանը, մտքերը պարզաբանում հստակ։ Իր ելույթներում Լենինը չէր շրջանցում ցավոտ հարցերը, ընդհակառակը՝ առաջադրում էր դրանք ամենայն խստությամբ ու կոնկրետությամբ։ Նրա խոսքը հուզում էր ունկնդիրներին և դրոշմվում նրանց հիշողության մեջ։ Կուսակցության գաղափարներն ու քաղաքականությունը մասսաներին հասցնելու լենինյան այս մեթոդը պետք է լինի յուրաքանչյուր պրոպագանդիստի գործունեության ուղենիշը։

Մի քանի տասնամյակ է, ինչ կոմունիստ Հ. Նալբանդյանը նվիրված ծառայում է մարքս-լենինյան հեղափոխական տեսության, կուսակցության քաղաքականության պրոպագանդման շնորհակալ գործին։ Այժմ նա ղեկավարում է ՀԱՄԽ-ի կուսկազմակերպության «ՍՄԿԿ XXIV համագումարը և կուսակցության արտաքին քաղաքականությունն արդի փուլում» տեսական սեմինարը։ Իր ողջ պրոպագանդիստական գործունեության ընթացքում նա անխոնջ կերպով հարստացրել է գիտելիքները, քայլել կյանքին համընթաց, ապրել ժամանակի շնչով։ Իր իսկ խոսքերով ասած՝ սոսկ քաղաքական գիտելիքները բավական չեն պրոպագանդիստ լինելու համար. մարդկանց սրտերը թափանցելու, նրանց մտքերի ու գործունեության վրա ներգործելու նպատակով պետք է լավատեղյակ լինել օրվա իրադարձություններին, ուսումնասիրվող հարցերը բազմակողմանիորեն կապել պրակտիկ խնդիրների հետ։ Կյանքից կտրված պրոպագանդան դատարկ կրակոցի է նման։

Հավատարիմ այդ սկզբունքներին՝ Հ. Նալբանդյանը դրանք լիովին կիրառում է իր պրոպագանդիստական աշխատանքում, միշտ որոնում պարապմունքների անցկացման հետաքրքրական ձևեր ու մեթոդներ։ Տեսության հարցերը պարզաբանելիս դրանք օրգանապես շաղկապում է իրականության հետ, օրգանական կապ ստեղծում ուսումնասիրվող թեմայի և արհմիությունների գործունեության, նրանց առջև ծառացած խնդիրների հետ, ունկնդիրների ուշադրությունը բևեռում գործնական հարցերի լուծման վրա, բարձրացնում նրանց պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։ Նրա վարած սեմինար-պարապմունքներն անցնում են գաղափարապես հագեցված, ունկրնդիրների անկաշկանդ ու ակտիվ մասնակցության պայմաններում։

Մեծ է պրոպագանդիստ Նալբանդյանի նաև անձնական օրինակի ուժը։ Նա իր երկարամյա բեղմնավոր աշխատանքային գործունեության ընթացքում ամենայն բարեխղճությամբ և պատասխանատվությամբ է կատարել թե՛ աշխատանքային պարտականությունները, թե՛ հասարակական հանձնարարությունները։ Արտասովոր աշխատասիրությունը, դժվարությունների հաղթահարման անընկճելի կամքը, ազնվությունը և անկեղծությունը, մարդկանց հանդեպ զգայուն վերաբերմունքը, պահանջկոտությունն ու թերությունների նկատմամբ անհաշտվողականությունը նրա բնավորության հատկանշական կողմերն են։

Նալբանդյանի պրոպագանդիստական գործունեությունը չի սահմանափակվում միայն սեմինար-պարապմունքների անցկացումով, այն դրսևորվում է ամենուրեք։ Կուսակցական պրոպագանդան նրա էությունն է, ներքին մղումը։ Ահա թե ինչու տասնյակ տարիների ընթացքում նրա մոտ քաղաքական և աշխատանքային դաստիարակություն ստացած մարդիկ ձգտում են նմանվել նրան, ընդօրինակել լավագույն հատկանիշները։

Կոմունիստների և անկուսակցական ակտիվիստների գաղափարական-քաղաքական դաստիարակության գործում ջանք ու եռանդ չեն խնայում բազմաթիվ այլ շնորհալի պրոպագանդիստներ, որոնց թիվը հասնում է տասնյակների ու հարյուրների։



Քաղաքական ուսուցման կենտրոնական դեմքը պրոպագանդիստն է։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ պարապմունքներն աշխույժ, բովանդակալից, գաղափարապես հագեցած և արդյունավետ են անցնում այն քաղդպրոցներում ու սեմինարներում, որոնց պրոպագանդիստներն ունեն տեսական ու քաղաքական հարուստ գիտելիքներ, սիրում են իրենց գործը, տիրապետում կուսակցական պրոպագանդայի արվեստին։

Անհրաժեշտ է, որ կուսակցական կոմիտեներն ու սկզբնական կուսկազմակերպությունները բոլոր միջոցներով ընդհանրացնեն և տարածեն լավագույն պրոպագանդիստների փորձը։ Պետք է արմատապես բարելավել սկսնակ պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքը, պայմաններ ստեղծել նրանց տեսական մակարդակի բարձրացման, պրոպագանդիստական պրակտիկ փորձի հարստացման համար։ Գաղտնիք չէ, որ նրանցից ոմանք դեռ անհրաժեշտ գիտելիքներ չունեն, չեն տիրապետում պրոպագանդիստական արվեստին։ Որպես կանոն, նման պրոպագանդիստների մոտ պարապմունքներն ընթանում են տաղտկալի, անարդյունավետ, ունկնդիրների պասիվության պայմաններում։ Այսպիսի «ուսուցումը» ընդհանուր ոչինչ չունի կուսակցական պրոպագանդայի հետ։ Կուսակցական կոմիտեները պետք է մշտապես վերանայեն պրոպագանդիստական կադրերի կազմը, այն համալրեն նոր, արժանավոր մարդկանցով։

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ 1975 Թ. ՀՈՒՆՎԱՐՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԸ կուսակցական կազմակերպություններից պահանջեց էապես բարելավել կադրերի հետ տարվող աշխատանքը, բարձրացնել նրանց պատասխանատվությունը։ Այդ պահանջը հավասարապես վերաբերում է նաև գաղափարական ոլորտի կադրերին, այդ թվում և՝ պրոպագանդիստներին։ Վերջիններիս պարտքն է իրենց դաստիարակչական աշխատանքով օգնել ունկնդիրներին՝ խորապես ըմբռնելու կուսակցության քաղաքականության նպատակներն ու խնդիրները, նրանք կոչված են զարգացնելու աշխատավորների ակտիվությունն ու նախաձեռնությունը, նրանց հետ պայքարելու սոցիալիստական հասարակարգին խորթ երևույթների դեմ։ Պլենումում հանրապետության ժողովրդական տնտեսության, հասարակական կյանքի վիճակի քննադատական վերլուծությունը պետք է խորհել տա նաև պրոպագանդիստներին։

Կուսակցական և տնտեսագիտական կրթության ուսումնական տարին հաջողությամբ ավարտելու համար պրոպագանդիստները պարտավոր են նախապես մտահոգվել հանրագումարային պարապմունքները գաղափարական հագեցվածությամբ և բարձր մակարդակով անցկացնելու մասին։ Այդ պարապմունքների համար անհրաժեշտ է ընտրել ուսումնական ծրագրերի գլխավոր պրոբլեմները, որոնք կարոտ են լրացուցիչ ու ավելի խոր պարզաբանման, սերտորեն շաղկապվում են տվյալ կոլեկտիվի առջև ծառացած գործնական խնդիրների լուծմանը, հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքների կատարմանը։ Այդ պրոբլեմները պետք է առանձնացնել այն հաշվով, որպեսզի 2—3 պարապմունքի ընթացքում դրանք առավել խորությամբ յուրացվեն ունկընդիրների կողմից։ Դրա համար հարկավոր է, որ պրոպագանդիստները քըննարկվող հարցերի մասին նախապես տեղյակ պահեն ունկնդիրներին, ապահովեն նրանց ակտիվ մասնակցությունը դրանց քննարկմանը։

Կուսակցական կոմիտեներն իրենց հերթին պարտավոր են կազմակերպչական միջոցներ մշակել, քաղլուսկաբինետների, մեթոդխորհրդի անդամների միջոցով գործնական օգնություն ցույց տալ պրոպագանդիստներին և սկզբնական կուսկազմակերպություններին՝ կուսակցական ու տնտեսագիտական ուսուցման բոլոր օղակներում տարեվերջյան ամփոփիչ պարապմունքները կազմակերպված և գաղափարական բարձր մակարդակով անցկացնելու համար։

Ելնելով գաղափարական-քաղաքական պրոբլեմների կոմպլեքսային լուծման շահերից՝ կուսակցական կոմիտեները և սկզբնական կուսկազմակերպությունները պարտավոր են է՛լ ավելի բարելավել պրոպագանդիստների ընտրության ու դաստիարակության գործը, ընդհանրացնել լավագույնների փորձը, մշտապես հիշել, որ քաղուսուցման կենտրոնական դեմքը պրոպագանդիստն է, և կոմունիստների գաղափարական կոփվածությունը մեծապես պայմանավորված է նրա գործունեությամբ։

# ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

**Ա. Պ. ՇՉԵՐԲԱԿՈՎԱ**

ԱՐԴԻ ՓՈՒԼՈՒՄ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ հաջող զարգացումը մեծ չափով պայմանավորված է կադրերի, աշխատավորական լայն մասսաների տնտեսագիտական կրթությամբ: Ահա թե ինչու մեր կուսակցությունն աշխատավորների տնտեսագիտական ուսուցումը դիտում է որպես սովետական մարդկանց գիտական աշխարհայացքի ձևավորման ընդհանուր աշխատանքի օրգանական մի մաս:

Ընթացիկ ուսումնական տարում հանրապետության տնտեսագիտական կրթության սիստեմում ընդգրկված է մոտ 86 հազար մարդ, որակավորումը բարձրացնելու նպատակով՝ մոտ 70 հազար: Կուսակցական ուսուցման ցանցում տնտեսագիտական հարցերն ուսումնասիրում են 56 հազար մարդ, իսկ կոմերիտական քաղուսուցման ցանցում՝ ավելի քան 45 հազար պատանիներ ու աղջիկներ: 14 հազար ունկնդիր ունեն տնտեսագիտական ժողովրդական համալսարանները և լեկտորիումները:

Տարեցտարի մեծանում է կոմունիստական աշխատանքի դպրոցների թիվը, ընթացիկ տարում դրանցում սովորում է ավելի քան 56 հազար մարդ: Բանվորները, կոլտնտեսականները, ծառայողները կոմունիստական աշխատանքի դպրոցներում ծանոթանում են աշխատավորական կոլեկտիվների առաջավոր փորձին, արտադրական գործունեությանը:

Անցած չորս տարվա արդյունքների վերլուծությունը ցույց է տալիս, որ հանրապետության աշխատավորների տնտեսագիտական ուսուցման սիստեմը տարեցտարի ամրապնդվում է կազմակերպչորեն, հնարավորություն ընձեռում ակտիվորեն ազդելու աշխատավորական լայն մասսաների արտադրական և դաստիարակչական գործունեության վրա:

Իջևանի գորգագործական կոմբինատի գործվածքային արտադրամասի պրոպագանդիստ ընկ. Ս. Դավթյանը համոզված է, որ արտադրության արդյունավետության բարձրացման համար ոչ պակաս դեր է խաղացել իրենց արտադրամասում կազմակերպված տնտեսագիտական ուսուցումը, որին մասնակցած 31 ունկնդիրներից 11-ն արդեն կատարել են իրենց հնգամյա պլանը: Ավանդելով տնտեսագիտական գիտելիքների հիմունքները, փորձառու պրոպագանդիստը, բարձրագույն կրթությամբ մասնագետ ունկնդիրների հետ հիմնավորապես մշակում է այնպիսի թեմաներ, ինչպիսիք են «Իններորդ հնգամյակի պլանը և արտադրության արդյունավետության բարձրացումը», «Սոցիալիստական պլանավորման կազմակերպումը», «Արտադրության որակն ու կուլտուրան» և այլ թեմաներ: Այդ տնտեսագիտական դպրոցի ակտիվ ունկնդիրներ Պ. Ճաղարյանը, Ե. Մխիթարյանը, Կ. Սահակյանը, Ա. Ճաղարյանը արտադրության առաջավորներ են:



Կադրերի տնտեսագիտական ուսուցումը լավ է կազմակերպված Երևանի № 4 կոշիկի ֆաբրիկայում, որտեղ յուրաքանչյուր երեք աշխատողից երկուսն ընդգրկված են տնտեսագիտական ուսուցման մեջ: Արդյունավետ են անցնում պրոպագանդիստ Ե. Դեգերյանի պարապմունքները: Նա յուրաքանչյուր թեմա անմիջապես կապում է կոլեկտիվի առջև ծառացած կոնկրետ խնդիրներին: Դպրոցի ունկնդիրները տեխնոլոգիական պրոցեսի կատարելագործման համար տնտեսապես արդյունավետ շատ առաջարկներ են արել:

Ժողովրդական տնտեսության առջև ծառացած խնդիրների իրականացման գործում մեծ է տեխնիկական մտավորականության դերը: Արդյունաբերական ձեռնարկություններում, տրանսպորտում, շինարարությունում, գյուղատնտեսական արտադրության մեջ, կոլեկտիվներին գլխավորում է ինժեներա-տեխնիկական աշխատողների մի մեծ բանակ. նրանք ակտիվորեն մասնակցում են իններորդ հնգամյակի հաջող ավարտման համար սոցիալիստական մրցության կազմակերպմանը: Արտադրության հրամանատարները՝ ինժեներներն ու տեխնիկները, պայքարում են արտադրության տեխնոլոգիան, դրա մեքենայացումը և ավտոմատացումը կատարելագործելու համար: Արտադրության այդ հրամանատարներից լավագույններն իրենց պաշտոնական պարտականությունների կատարումը միշտ զուգորդում են լայն և ակտիվ հասարակական գործունեության հետ, սիստեմատիկաբար ու հաստատակամորեն զբաղվում իրենց մասնագիտական, քաղաքական գիտելիքների հարստացմամբ: Ճիշտ են վարվում այն կուսակցական կոմիտեները և տնտեսական ղեկավարները, որոնք մեծ հոգատարություն են ցուցաբերում իրենց ինժեներա-տեխնիկական կադրերի տեսական-գաղափարական աճի նկատմամբ:

Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատը հանրապետության երիտասարդ և հեռանկարային ձեռնարկություններից է: Ցեմենտի արտադրամասի գործարկումից 4 տարի է անցել: Այդ ժամանակամիջոցում այստեղ շատ բան է արվել: 1971 թ. կոմբինատը թողարկել էր 50 հազար տոննա ցեմենտ, իսկ 1974-ին՝ ավելի քան մեկ միլիոն: Այն դարձել է շահութաբեր ձեռնարկություն: Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատը հնգամյակի որոշիչ տարում իրացրեց մեկ մլն ռուբլու արտապլանային արտադրանք: Այս ամենը կոլեկտիվի անձնվեր աշխատանքի արդյունքն է: Ահա թե ինչ է ասում կոնստրուկտորական բյուրոյի պետ, կոմբինատի ինժեներա-տեխնիկական աշխատողների տնտեսագիտական դպրոցի պրոպագանդիստ ընկ. Ա. Աղբալյանը. «Սկզբում մեզ մոտ կադրերի պակաս էր զգացվում, շատերը փորձ չունեին, հարկ էր լինում նրանց գործուղել մեր երկրի համանման ձեռնարկություններ՝ բարձրացնելու իրենց որակավորումը: Այժմ կոմբինատում կադրերի հարցը հիմնականում լուծված է: Մենք մեր ուժերով կարող ենք լուծել տեխնիկական բարդ խնդիրներ, կառավարել արտադրությունը: Մեր օրերում, երբ հաջողությամբ իրականացվում են ժողովրդա-տնտեսական պլանները, բարձրանում է տնտեսավարման գիտական մակարդակը, ներքին ռեզերվները լրիվ օգտագործելու, արտադրության կառավարմանն ակտիվորեն մասնակցելու համար մեզ հարկավոր են նաև տնտեսագիտական գիտելիքներ»:

Ինժեներա-տեխնիկական աշխատողների տնտեսագիտական գիտելիքները հարստացնելու նպատակով կոմբինատի կուսկոմիտեն և վարչական ղեկավարությունը նրանց համար կազմակերպել են «Աշխատանքի կազմակերպում և արտադրության կառավարում» դպրոցը: ՍՍՀՄ գունավոր մետալուրգիայի մինիստրության տիպային ուսումնական պլանի հիման վրա մշակվել է այդ դպրոցի աշխատանքի պլանը, որի կազմման ընթացքում հաշվի է առնվել անցած տարիների փորձը: Պլանը քննարկվել և հաստատվել է կոմբինատում ստեղծված տնտեսագիտական ուսուցման հասարակական խորհրդում:

Կոմբինատի ղեկավարությունը հոգ է տարել ուսուցման համար նյութա-տեխնիկական բազայի ստեղծման մասին: Ուսումնական սենյակը սարքավորված է պարապմունքների անցկացման դիդակտիկ նյութերով, հաճախակի ցուցադրվում են համապատասխան կինոնկարներ: Ուսուցումն ուղեկցվում է

գործնական պարապմունքներով։ Այժմ այդ դպրոցը շրջանում տնտեսագիտական ուսուցման առաջավոր փորձի դպրոց է։

Կուսակցության Հրազդանի շրջկոմը լուրջ ուշադրություն է նվիրում կադրերի տնտեսագիտական կրթությանը, որին մասնակցում են շրջկոմի ապարատի բոլոր աշխատողները։ Շրջկոմի պատասխանատու աշխատողներից յուրաքանչյուրն ամեն ամիս լսում է մեկ-երկու պարապմունք, հանգամանալի ինֆորմացիա տալիս քաղլուսավորության կաբինետին առընթեր մեթոդական խորհրդին, որը և ամփոփում է արդյունքները, օգնում պրոպագանդիստներին և ունկնդիրներին, կատարում աշխատանքի փորձի փոխանակում, տարածում պրոպագանդիստների և սեմինարների ղեկավարների առաջավոր փորձը։

ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ ՄԱՍՍԱՅԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ աշխատանքի մյուս ձևերին սերտորեն շաղկապված տնտեսագիտական ուսուցումն աշխատանքային բազմաթիվ կոլեկտիվներում դարձել է տնտեսական շինարարության, կոմունիստական դաստիարակության խնդիրների լուծման կարևոր միջոց։ Դրա հետ մեկտեղ առաջին տեղերում դեռևս մի շարք չլուծված հարցեր, բացթողումներ, չհաղթահարված դժվարություններ կան տնտեսագիտական ուսուցման դրվածքում։ Որոշ կոլեկտիվներում պարապմունքների տեսական ցածր մակարդակը, ուսուցման նկատմամբ նեղ լուսավորչական մոտեցումը, նրա կտրվածությունն արտադրության հրատապ խնդիրներից, ընթացիկ գործերի մասին մակերեսային ինֆորմացիան՝ կուսակցության տնտեսական քաղաքականության պահանջների դիրքերից ելնող տնտեսավարման պրակտիկայի խոր վերլուծության փոխարեն — այս և մի շարք այլ թերություններ թուլացրել են ուսուցման գործունությունը։

Հանրապետության կուսակցական կոմիտեների՝ վերջերս կայացած պլենումներում դրանց մասնակիցները լրջորեն խոսեցին ժողովրդական տնտեսության գրեթե բոլոր բնագավառներում տեղ գտած թերությունների մասին, նշեցին ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի (1974 թ.) և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան պլենումի (1975 թ.) որոշումներից բխող մեծ և պատասխանատու խնդիրները։

Տարիներ շարունակ ետ են մնում Մարտունու, Թումանյանի, Կրասնոսելսկի, Եղեգնաձորի, Ազիզբեկովի, Ամասիայի շրջանները։ Դրանց շրջկոմները թերագնահատել են կադրերի տնտեսագիտական ուսուցման դերը, անպատասխանատու վերաբերմունք ցուցաբերել մի այնպիսի կարևոր կուսակցական փաստաթղթի նշանակության և նրա պահանջների կենսագործման նկատմամբ, ինչպիսին է «Աշխատավորների տնտեսագիտական ուսուցումը բարելավելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։

ՀՍՍՀ գյուղատնտեսության, կենցաղային սպասարկման, արդյունաբերական շինարարության, գյուղական շինարարության մինիստրությունները, մի շարք գերատեսչություններ և խոշոր ձեռնարկություններ անբավարար են հոգում տնտեսագիտական ուսուցման համար նյութատեխնիկական բազայի ստեղծման, որակյալ պրոպագանդիստական կադրերի պատրաստման մասին։

Ծանոթանալով կուսկոմիտեների պլենումների ինֆորմացիային, դժվար չէ նկատել, որ գրեթե յուրաքանչյուր հաշվետվության, աշխատանքային կոլեկտիվների առջև դրված խնդիրների մեջ բացակայում է կադրերի տնտեսագիտական պատրաստության վերլուծությունը, քիչ է խոսվում այդ կարևոր գործոնի մասին, որի հետ փոխկապակցված կազմակերպական, գաղափարադաստիարակչական և տնտեսական աշխատանքը կարող էր ավելի լավ արդյունքներ տալ արտադրության կազմակերպման, արտադրա-տեխնիկական ցուցանիշների բարձրացման գործում։

ՍԿՍՎԵԼ Է ԿԱԴՐԵՐԻ ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՑՄԱՆ արդյունքների ամփոփման շրջանը, որը միաժամանակ պետք է դառնա 1975—76 ուստարվա ակտիվ նախապատրաստության սկիզբը։ Կուսկոմիտեները ձեռնարկությունների, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ղեկավարների հետ, պետք է ուշադիր վերլուծեն ուսումնական տարվա արդյունքները, ընդհանրացնեն փորձը, նշեն այդ գործի հետագա բարելավման ուղիները։



Այժմ մշակվում է մինչև 1990 թ. երկրի տնտեսական զարգացման հեռանկարային պլանը։ Շատ կարևոր է, որ այդ մշակումը խարսխվի տնտեսավարման և պլանավորման միանգամայն արդիական մեթոդների, արտադրության կազմակերպման ու կառավարման ձևերի ու կառուցվածքի վրա։ Վ. Ի. Լենինը իր ժամանակին նշել է. «...կառավարելու համար հարկավոր է ձեռնհաս լինել, հարկավոր է լրիվին և մանրամասնորեն գիտենալ արտադրության բոլոր պայմանները, հարկավոր է գիտենալ այդ արտադրության տեխնիկան՝ նրա ժամանակակից բարձրությամբ, հարկավոր է ունենալ գիտական որոշ կրթություն» (Երկեր, հ. 30, էջ 547)։ Գիտատեխնիկական առաջադիմության պայմաններում այդ ցուցումն առանձնակի իմաստ է ստանում։ Ուստի, աշխատավորների տնտեսագիտական ուսուցման դերն առանձնապես բարձրանում է արդի փուլում՝ զարգացած սոցիալիստական արտադրության պայմաններում։ Կուսակցության տնտեսական քաղաքականությունն այժմ, ինչպես երբեք, հենվում է օբյեկտիվ օրենքների վրա։ Դրանք գիտենալը և պրակտիկայում կիրառելը պահանջում են տնտեսագիտական խոր գիտելիքներ, ընդսմին, ոչ միայն ղեկավարներից, այլև աշխատավորների լայն մասսաներից։

Կուսակցական կոմիտեները պետք է կադրերի տնտեսագիտական ուսուցման ղեկավարման ընդհանուր սիստեմի մեջ ավելի լայնորեն ներգրավեն ճյուղային բաժինները։ Վերջիններս պետք է պրոպագանդայի և ագիտացիայի բաժինների հետ համատեղ մասնակցեն ճյուղային պրոպագանդիստների սեմինարներում և դասընթացներում տնտեսագիտական ուսուցման, կադրերի տնտեսագիտական պատրաստության հեռանկարային պլանների կատարման ընթացքի վերահսկողությանը, անհրաժեշտ պահանջկոտություն ցուցաբերեն տնտեսական օրգանների հանդեպ, որոնք պատասխանատու են ուսուցման կազմակերպման և դրա մակարդակի, տնտեսական ամբողջ աշխատանքի կատարելագործման հետ նրա զուգորդման համար։

Տնտեսագիտական ուսուցման հետագա կատարելագործման ասպարեզում պետք է մեծ դեր խաղան կուսկոմիտեներին, մինիստրություններին և գերատեսչություններին, ձեռնարկություններին կից ստեղծված հասարակական տնտեսագիտական խորհուրդները, որոնք կոչված են ընդհանրացնելու և տարածելու ուսուցման առաջավոր փորձը, օգնություն ցույց տալու պրոպագանդիստներին, նպաստելու անցկացվող պարապմունքների արդյունավետությանը, ապահովելու այդ կարևոր գործին մասնակցող բոլոր ձեռնարկությունների սերտ կապը, նրանց ջանքերի կոորդինացումը։

Տնտեսագիտական ուսուցման մակարդակը և որակը գլխավորապես պայմանավորված են տնտեսագիտական դպրոցների ղեկավարներով, պրոպագանդիստներով։ Ուսուցումն առավել արդյունավետ կլինի այն դեպքում, եթե պրոպագանդիստը, իսկ նրա հետ մեկտեղ նաև ունկնդիրները, քաջ իմանան, թե ինչպիսի սոցիալ-տնտեսական և քաղաքական խնդիրներ են լուծում կուսակցական կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները։ Կարծում ենք, որ մեր հանրապետության տնտեսագիտական ուսուցման սիստեմի պրոպագանդիստները հավանություն կտան Իվանովոյի մարզի պրոպագանդիստների հայրենասիրական նախաձեռնությանը՝ ունկնդիրների անձնական արտադրական, հանդիպական պլանների և սոցիալիստական պարտավորությունների մշակման, դրանց տնտեսագիտական հիմնավորվածության և կատարման նկատմամբ վերահսկողության գործին պրոպագանդիստների մասնակցությանը։

Տնտեսագիտական ուսուցումը, կուսկոմիտեների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների կազմակերպական ու մասսայական-քաղաքական աշխատանքի հետ սերտորեն փոխկապակցված, պետք է դառնա պլանների և սոցիալիստական պարտավորությունների, ՍՄԿԿ XXIV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1974 թ.) և Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան (1975 թ.) պլենումների որոշումների կատարմանը նպաստող կարևոր գործոն։

Մորոզովի և Ն. Ա. Կուչերենկոյի մասին, որոնց կոնստրուկտորական բյուրոն ստեղծել էր Տ—34 տանկը՝ սովետական տեխնիկայի աչքի ընկնող նվաճումը:

Խոսելով ավիացիոն, հակաօդային պաշտպանության, ռազմա-ծովային զորքերի վիճակի մասին, Ժուկովը սեղմ, բայց ամենայն խորությամբ բնութագրում է այդ զորքերի նախապատերազմյան վիճակը, նշում մեր տաղանդավոր ավիակոնստրուկտորներ Իլյուշինի, Միկոյանի, Լավոչկինի, Պետլյակովի, Յակովլևի մեծ ավանդը, որի արդասիքն էին հայրենական առաջնակարգ ինքնաթիռները:

Ժուկովը բարձր է գնահատում ՍՍՀՄ ռազմա-ծովային նավատորմի անձնակազմի մարտունակությունը և այդ առիթով հակիրճ բնութագրում Իսակովին (որն այդ ժամանակ ռազմա-ծովային նավատորմի գլխավոր շտաբի պետն էր), որպես տաղանդավոր, նախաձեռնող և ուժեղ կամքի տեր ծովակալի: Այնուհետև Գ. Կ. Ժուկովն անդրադառնում է պատերազմի նախօրյակին ստեղծված ռազմաքաղաքական իրադրությանը, մասնավորապես քննության առարկա դարձնում այն հարցը, թե ինչու ֆաշիստներին հաջողվեց մեզ հանկարծակիի բերել:

Գ. Կ. Ժուկովը չի բաժանում որոշ հուշագիրների այն կարծիքը, թե իբր սովետական կառավարությանը և սովետական ռազմական հրամանատարությանը պատերազմի նախօրյակին հայտնի է եղել ֆաշիստական հարձակման «Բարբարոսա» պլանը, գլխավոր հարվածների ուղղությունը, գերմանական զորքերի ռազմաճակատի լայնությունը և այլն: Ժուկովը վճռականորեն հերքում է այդ. «Թույլ եմ տալիս ամբողջ պատասխանատվությամբ հայտարարել, որ դա զուտ մտահնարանք է: Նման տվյալներ, որքան ինձ հայտնի է, ո՛չ սովետական կառավարությունը, ո՛չ պաշտպանության ժողկոմը, ո՛չ գլխավոր շտաբը չեն ունեցել» (հ. 1, էջ 259): Սխալ կլիներ նաև պնդել, թե սովետական կառավարությունն ու զորքերի հրամանատարությունը պատերազմի նախօրյակին բացառել են գերմանական հարձակումը Սովետական Միության վրա: Բազում փաստերով Գ. Կ. Ժուկովը ցույց է տալիս, որ այդ ոչ միայն չի բացառվել, այլև մեր բանակը միշտ նախապատրաստվել է հենց ֆաշիստական Գերմանիայի հետ սպասվող բախմանը: Կուսակցության ու կառավարության ռազմական բոլոր միջոցառումները պատերազմի նախօրյակին մշակվում էին, հաշվի առնելով, առաջին հերթին, պոտենցիալ թշնամու՝ ֆաշիստական Գերմանիայի ռազմական հնարավորությունները: Սակայն մի շարք օբյեկտիվ գործոններ անհնար դարձրին պլանավորված այն բոլոր միջոցառումների իրականացումը, որով կբացառվեին պատերազմի սկզբնական շրջանում ֆաշիստական բանակի հաջողությունները: Գ. Կ. Ժուկովը, լինելով այդ շրջանում գլխավոր շտաբի պետ, անդրադառնում է նաև սովետական ռազմական հրամանատարության սուբյեկտիվ վրիպումներին, նշում, որ դրանք պատերազմի սկզբնական շրջանում որոշ չափով նպաստել են ֆաշիստական բանակների արագ առաջխաղացմանը:

Երբ սկսվեց Հայրենական մեծ պատերազմը, Ժուկովը կարմիր բանակի գլխավոր շտաբի պետն էր: Քաջատեղյակ ֆաշիստական զորքերին հակահարված տալու նպատակով կուսակցության ու կառավարության, մասնավորապես, պաշտպանության ժողկոմատի ձեռնարկած բոլոր կարևոր միջոցներին՝ գրքում նա հանգամանորեն վերլուծում է պատերազմի առաջին ամիսների իրադարձությունները:

1941 թվականի հուլիսի 29-ին, Կիևի պաշտպանության հարցում գերագույն գլխավոր հրամանատարի կարծիքը վիճարկելու համար, Գ. Կ. Ժուկովն ազատվում է գլխավոր շտաբի պետի պաշտոնից և ուղարկվում նորաստեղծ Ռեզերվային ռազմաճակատի հրամանատար, մնալով իբրև գերագույն գլխավոր հրամանատարի տեղակալ: Նրա ղեկավարած այդ ռազմաճակատում հաջողությամբ իրականացվում է Ելնյայի օպերացիան. գլխովին ջախջախվում են հակառակորդի 10-րդ տանկային, 17-րդ մոտորացված և 15-րդ հետևակային ընտիր դիվիզիաները: Հենց Ելնյայի տակ էլ, Ռեզերվային ռազմաճակատում ծնվում է փառապանծ սովետական գվարդիան: Առաջինը գվարդիական կոչում է ստանում 100-րդ հրաձգային դիվիզիան:

Ամփոփելով պատերազմի առաջին ամիսների իրադարձությունները, Գ. Կ. Ժուկովը նշում է, որ թեև սովետական բանակը մեծ կորուստներ էր կրել, այնուամենայնիվ, կարողացավ ձախողել գերմանա-ֆաշիստական գլխավոր հրամանատարության հիմնական պլանը: Ֆաշիստներին չհաջողվեց Արևմուտքում սովորական դարձած տեմպերով առաջ շարժվել: Նրանց արգելակեցին սովետական զինվորի անձնազոհությունը, կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության ջանքերը: Գ. Կ. Ժուկովն իր հուշերում արժանին է մատուցում սովետական բանակի մասսայական հերոսությանը, նրա խոր հայրենասիրությանը: «Անկասկած է,— գրում է Գ. Կ. Ժուկովը,— որ հավասար պայմանների դեպքում խոշորագույն ճակատամարտերը և ամբողջ պատերազմները շահում են այն զորքերը, որոնք աչքի են ընկնում հաղթելու երկաթյա կամքով, նպատակի գիտակցությամբ, ոգու կայունությամբ և նվիրվածությամբ այն դրոշին, որի ներքո նրանք գնում են մարտի»: Հայրենական պատերազմի ողջ պատմությունը լիովին



հաստատում է Գ. Կ. Ժուկովի այս խոսքերի ճշմարտացիությունը:

1941 թվականի սեպտեմբերի 10-ին, պաշտպանության պետական կոմիտեի որոշմամբ, Գ. Կ. Ժուկովը մեկնում է Լենինգրադ: Հայտնի է, թե ինչպիսի կարևոր նշանակություն էին տալիս ֆաշիստական գեներալները Լենինգրադի գրավմանը: Ժուկովն իրավամբ նշում է, որ Լենինգրադի անկումը հնարավորություն կընձեռեր Հիտլերին՝ ազատված զորքերը միացնելու «Թայֆուն» օպերացիան իրականացնող զորքերին, օպերացիա, որի նպատակն էր գրավել Մոսկվան: Գ. Կ. Ժուկովն իր հուշերում հանգամանորեն խոսում է Լենինգրադի պաշտպանության հետ կապված վիթխարի դժվարությունների մասին, առանձնապես շեշտում Լենինգրադի կուսակցական կազմակերպության, լենինգրադցիների և Լենինգրադը պաշտպանող զորքերի անսահման նվիրվածությունը Լենինի մեծ գործին ու հայրենիքին:

Լենինգրադի պաշտպանությունն արտացոլող գլխում Ժուկովը հակահարված է տալիս պատմության բուրժուական կեղծարարներին, որոնք խեղաթյուրում են քաղաքի հերոսական պաշտպանության իրական պատմությունը: Առաջ անցնելով իրադարձությունների ընթացքից, նա բավական էջեր է նվիրում Լենինգրադի բլոկադայի ճեղքմանը: Ժուկովը, որպես Լենինգրադի ռազմաճակատի զորքերի հրամանատար, մեծ ներդրում ունի ինչպես քաղաքի պաշտպանության, նույնպես և բլոկադայի ճեղքման գործում: Ի դեպ, Գ. Կ. Ժուկովի զորավարական գործունեությունը լենինգրադյան շրջանում իր գեղարվեստական արտացոլումն է գտել Ա. Չակովսկու «Բլոկադա» մեծածավալ վեպում:

1941 թվականի հոկտեմբերի 5: Մոսկվայի պատերի տակ ծավալվում են ահեղ մարտեր: Գ. Կ. Ժուկովը ետ է կանչվում Լենինգրադից, որտեղ դրությունը բավականին կայունացել էր և 1941 թ. հոկտեմբերի 10-ին գերագույն գլխավոր հրամանատարության հրամանով նշանակվում է Արևմտյան ռազմաճակատի հրամանատար: Ռեզերվային և Արևմտյան ռազմաճակատները միացվել էին:

Արևմտյան ռազմաճակատի հրամանատարի պոստում Գ. Կ. Ժուկովը վիթխարի աշխատանք է կատարում Մոսկվայի մատույցներում ռազմաճակատի գիծը կայունացնելու և ֆաշիստական զորքերին հակահարված տալու գործը կազմակերպելու ասպարեզում:

Մոսկվայի ճակատամարտին նվիրված գլխում Գ. Կ. Ժուկովը պրոֆեսիոնալ ռազմագետի վարպետությամբ շարադրում է Մոսկվայի պաշտպանության հետ կապված առավել կարևոր դեպքերը, վերլուծում դրանք և ռազմագիտական արժեքավոր ընդհանրացումներ անում:

Մոսկվայի հերոսական պաշտպանությունը և այնուհետև սովետական զորքերի հակահարձակումն ու թշնամու բանակների «Կենտրոն» խմբավորման պարտությունը ստիպեցին գերմանական գեներալներին, սպաներին, շարքային զինվորներին համոզվելու, որ սովետական պետությունը հզոր է, սովետական զինված ուժերն անհաղթահարելի արգելք են հիտլերյան ռազմական ղեկավարների նպատակների իրագործման ճանապարհին: Գերմանական զորքերի պարտությունը Մոսկվայի մատույցներում բարձրացրեց սովետական զինված ուժերի հեղինակությունն ամբողջ աշխարհում և ստիպեց ճապոնական ու թուրքական ռեակցիոն շրջաններին ավելի զգույշ քաղաքականություն վարել Սովետական Միության նկատմամբ:

Մոսկվայի տակ կրած պարտությունից հետո գերմանացիները վերախմբավորեցին ուժերը և սկսեցին պատրաստվել նոր ամառային կամպանիայի: Գ. Կ. Ժուկովը բացահայտում է 1942 թ. սկզբին սովետական գլխավոր հրամանատարության և ռազմաճակատների առանձին հրամանատարների կոպիտ սխալները, որոնք թանկ նստեցին սովետական զորքերին Խարկովի մոտ, Ղրիմում: Սուբյեկտիվ վրիպումների մասին գրելուց զատ, նա վերլուծում է այն օբյեկտիվ պատճառները, որոնք հնարավորություն չընձեռեցին զարգացնելու սովետական զորքերի հաջողությունները Մոսկվայի, Ելեցի, Տիխվինի, Ռոստովի ճակատամարտերում:

Հեղինակն այնուհետև ցույց է տալիս, թե ինչպես սովետական զորքերը, հաղթահարելով 1942 թ. անհաջողությունները, կուսակցության ու Պաշտպանության պետական կոմիտեի ղեկավարությամբ, պատրաստվում են ջախջախիչ հարված հասցնելու ֆաշիստական բանակին:

Հայրենական մեծ պատերազմում բախտորոշ նշանակություն ունեցավ Ստալինգրադյան ճակատամարտը: Գ. Կ. Ժուկովը նկարագրում է Ստալինգրադի տակ սովետական զորքերի հակահարձակման նախապատրաստության ընթացքը և, որպես այդ իրադարձությունների կենտրոնում գտնվող անձնավորություն, ցույց տալիս, թե ինչպիսի խնամքով ու հմտությամբ էր նախապատրաստվում գերմանական 6-րդ բանակի շրջապատման ու ջախջախման պլանը: Միանգամայն հարազատ պատմական փաստերին, այդ պլանը նա ներկայացնում է որպես կոլեկտիվ մտքի արդյունք:

1942 թվականի նոյեմբերի 19-ին սկսվեց սովետական զորքերի հակահարձակումը Ստալինգրադի տակ: Կարճ ժամանակամիջոցում շրջապատվեց ու ջախջախվեց հիտլերյան 6-րդ բա-

նակը: Բանակի հրամանատար Պաուլյուսը գերի ընկավ: 1943 թ. փետրվարի 2-ին ավարտվեց Ստալինգրադի օպերացիան. գլխովին ջախջախվեցին գերմանական 32 դիվիզիա և 3 բրիգադ, իսկ 16 դիվիզիաներ կորցրին իրենց կազմի 50—75 տոկոսը: Դոնի, Վոլգայի, Ստալինգրադի շրջանում թշնամին կորցրեց մեկուկես միլիոն մարդ, մոտ 3.500 տանկ ու գրոհային հրանոթ, 12.000 հրանոթ ու ականանետ, մոտ 3.000 ինքնաթիռ: «Մեր զորքերի հաղթանակը Ստալինգրադի տակ նշանավորեց արմատական բեկման սկիզբը պատերազմում՝ հօգուտ Սովետական Միության և մեր տերիտորիայից թշնամական զորքերի մասսայական վտարման սկիզբը: Այդ ժամանակից ի վեր և մինչև պատերազմի վերջը ստրատեգիական նախաձեռնությունը ամբողջովին սովետական հրամանատարության կողմն էր»,— գրում է Գ. Կ. Ժուկովը (հ. 2, էջ 132):

1943 թվականի գարնանը, իսկ այնուհետև ամռանը գերմանացիները փորձեցին խլել ստրատեգիական նախաձեռնությունը: Մեր զինված ուժերի հուժկու հարվածների տակ թշնամին չկարողացավ հասնել իր նպատակին: Առանձնապես կատաղի մարտեր ծավալվեցին Կուրսկի աղեղում: Սովետական հրամանատարությունը ժամանակին կռահեց գերմանա-ֆաշիստական զորքերի գլխավոր շտաբի պլանները և սկսեց նախապատրաստվել ահեղ ճակատամարտի: Գ. Կ. Ժուկովը, որպես այդ օպերացիայի կազմակերպիչներից մեկը, ամենայն մանրամասնությամբ շարադրում է Կուրսկի աղեղում տեղի ունեցած իրադարձությունները և համոզիչ ցույց տալիս, թե որքան էր բարձրացել զորքերի ղեկավարման, խոշոր ճակատամարտեր վարելու սովետական հրամանատարների հմտությունը: Կուրսկի ճակատամարտը վերջացավ գերմանա-ֆաշիստական զորքերի պարտությամբ: Գերմանական «Վագր» և «Հովազ» տանկերը անզոր գտնվեցին կոտրելու սովետական մարտիկների դիմադրությունը: Պրոխորովկայի տակ տեղի ունեցած տանկային խոշոր ճակատամարտում ջարդվեց ֆաշիստական ռազմական մեքենայի ողնաշարը: Հակահարձակման անցած սովետական զորքերը ետ շպրտեցին հակառակորդին դեպի ելման բնագծեր, իսկ այնուհետև՝ ավելի հեռու: 1943 թ. օգոստոսի 23-ին Խարկովի ազատագրմամբ ավարտվեց այն վիթխարի օպերացիան, որը Հայրենական պատերազմի պատմության մեջ մտել է Կուրսկի ճակատամարտ անունով:

Սկսվեցին մարտերն ամբողջ Ուկրաինայի ազատագրման համար: Այդ շրջանում Ժուկովը կոորդինացնում էր առաջին և երկրորդ Ուկրաինական ռազմաճակատների մարտական գործողությունները: Նրա անմիջական ղեկավար մասնակցությամբ իրականացվում է Կորսուն-Շևչենկոյի խոշոր օպերացիան: Դնեպրի աջ ափին շրջապատվեցին և ջախջախվեցին ֆաշիստական 10 դիվիզիա ու մեկ բրիգադ: 1944 թ. փետրվարի 29-ին ծանր վիրավորվում և ապրիլի 15-ին մահանում է սովետական բանակի ականավոր զորավարներից մեկը՝ 1-ին Ուկրաինական ռազմաճակատի հրամանատար, բանակի գեներալ Ն. Ֆ. Վատուտինը. մեծ է նրա երախտիքը մեր հայրենիքի զինված ուժերի մարտունակության բարձրացման գործում:

1944 թվականի մարտի 1-ին Ժուկովը նշանակվում է 1-ին Ուկրաինական ռազմաճակատի հրամանատար, միաժամանակ մնում գերագույն գլխավոր հրամանատարության զորակայանի անդամ և գերագույն գլխավոր հրամանատարի տեղակալ: Գրքի հետագա էջերում Ժուկովը պատմում է աջափնյա Ուկրաինայի ազատագրման հետ կապված ռազմական գործողությունների մասին: Ապրիլի 28-ին 1-ին Ուկրաինական ռազմաճակատի զորքերի հրամանատարությունը Գ. Կ. Ժուկովը հանձնում է մարշալ Ի. Ս. Կոնևին և վերադառնում զորակայան:

Հասել էր բելոռուսական հողը թշնամուց ազատագրելու պահը: Գերագույն գլխավոր հրամանատարությունը ամենայն մանրակրկիտությամբ նախապատրաստում է Բելոռուսիայի ազատագրման օպերացիան: Ժուկովին հանձնարարվեց կոորդինացնել 1-ին և 2-րդ Բելոռուսական ռազմաճակատների մարտական գործողությունները:

Սովետական զորքերի հրամանատարությանը հաջողվում է դեզինֆորմացիայի միջոցով ապակողմնորոշել հակառակորդին և փայլուն կերպով իրականացնել «Բագրատիոն» օպերացիան: Թշնամու «Կենտրոն» խմբավորման զորքերը գլխովին ջախջախվեցին: Ազատագրվեց Սովետական Բելոռուսիան. պատերազմական գործողությունները մասամբ փոխադրվեցին թշնամական տերիտորիա:

1944 թվականի սեպտեմբերին Գ. Կ. Ժուկովը պաշտպանության պետական կոմիտեի հատուկ հանձնարարությամբ մեկնում է 3-րդ Ուկրաինական ռազմաճակատի շտաբ՝ նախապատրաստելու ռազմական գործողությունները Բուլղարիայի դեմ: Բուլղարիայի ցարական կառավարությունը շարունակում էր համագործակցել ֆաշիստական Գերմանիայի հետ: Մեկնելուց առաջ Ժուկովը հանդիպում է Բուլղարիայի կոմկուսի ղեկավար Գեորգի Դիմիտրովի հետ. վերջինս վստահեցնում է Ժուկովին, որ բուլղարները երբեք չեն պատերազմի սովետական երկրի հետ: Եվ, իրոք, Բուլղարիայի հետ պատերազմ տեղի չունեցավ: Իրականացավ Գեորգի Դիմիտրովի կանխատեսումը: Բուլղար աշխատավորությունը, ժողովրդական ճակատի գլխավորությամբ, տապալեց պրոֆաշիստական կառավարությունը, աղ ու հացով դիմավորեց սովետական բանակի մուտքը Բուլղարիա: Նույնիսկ բուլղարական զինված ուժերի զինաթափման հարց չդրվեց: Բուլղարական բանակն իր հիմնական կազմով միացավ Կարմիր բանակին և պատերազմական գործողություններ սկսեց ֆաշիստական Գերմանիայի դեմ: Ժուկովն այդ իրադարձությունը բնութագրում է հետևյալ կերպ. «Ուրախալի է գիտակցել, որ այդ պատերազմում զոհեր չեղան, ո՛չ այս, ո՛չ այն կողմում: Այդ բոլոր իրադարձությունները մեր բանակի ազատագրական միսիայի վառ վկայությունն էին»:

Ժուկովի ռազմական տաղանդի ծավալման համար նոր ասպարեզ բացեցին Լեհաստանի ազատագրումն ու Բեռլինի օպերացիան: 1944 թ. դեկտեմբերին նա նշանակվում է 1-ին Բելոռուսական ռազմաճակատի հրամանատար: Մարշալ Կ. Կ. Ռոկոսովսկին փոխադրվում է 2-րդ Բելոռուսական ռազմաճակատ: Հարձակողական մարտերից հոգնած բանակներին հանգիստ էր պետք պատերազմի ավարտական օպերացիաներն իրականացնելու համար:

1944 թվականի դեկտեմբերին Արևմտյան ռազմաճակատում ծանր վիճակ է ստեղծվում դաշնակից զորքերի համար: Նրանց հրամանատարության մեջ խուճապ է սկսվում: Վտանգ կար, որ գերմանական տանկային միավորումները կարող էին ծովը նետել դաշնակիցների զորքերը: Չերչիլը հեռագրով դիմում է սովետական գերագույն գլխավոր հրամանատարությանը, խնդրելով օգնել՝ դուրս գալու դժվարին կացությունից: Սովետական հրամանատարությունը, հավատարիմ իր դաշնակցային պարտքին, հրամայում է 1-ին Բելոռուսական և 1-ին Ուկրաինական ռազմաճակատների զորքերին հարձակման անցնել նախապես նշված ժամկետից շուտ՝ հունվարի 12-ին: Չնայած անբարենպաստ պայմաններին, սովետական զորքերը կոտրում են թշնամու համառ դիմադրությունը և արագ առաջ շարժվում: Այդ թեթևացնում է դաշնակիցների վիճակը: Գերմանական հրամանատարությունը հապճեպ արևմտյան ռազմաճակատից տանկային դիվիզիաները նետում է արևելք: Սպառնալիքի տակ էր Բեռլինը:

Հակառակ այն պնդման, թե իբր սովետական զորքերը կարող էին դեռևս փետրվարին գրավել Բեռլինը, Ժուկովն ապացուցում է, որ այդ հնարավոր չէր, որ Բեռլինի գրավման համար լրացուցիչ ու մեծ նախապատրաստության կարիք կար: Հասնելով Օդերին, սովետական զորքերը պատրաստվում են վերջին վճռական մարտերին: Գրքի հետագա էջերը նվիրված են Բեռլինի օպերացիային: 1945 թ. ապրիլի 16-ին 1-ին Բելոռուսական ռազմաճակատի զորքերը հրետանային հզոր նախապատրաստությունից հետո անցնում են գրոհի: Թշնամու պաշտպանությունը ճեղքված է: Ընդամենը տասն օրում կես միլիոնանոց բեռլինյան խմբավորումը ջախջախվում է: Ռայխստագի վրա բարձրացվում է հաղթանակի դրոշը: 1945 թ. մայիսի 8-ին գերմանական զորքերը կապիտուլյացվում են: Ֆաշիստական Գերմանիայի կապիտուլյացումից հետո, Ժուկովը որոշ ժամանակ աշխատել է Գերմանիայի սովետական գոտում որպես վերահսկիչ խորհրդի անդամ և եղել է Գերմանիայում գտնվող մեր զորքերի հրամանատարը: Ժուկովը պատմում է, թե ինչպիսի հոգատարությամբ էին սովետական ռազմական իշխանություններն իրականացնում նոր Գերմանիայի վերածնման գործը. այն ժամանակ, երբ մեր երկիրը տնտեսական ծանր պայմաններում էր, սովետական զինվորական հրամանատարությունը, սովետական կառավարության հանձնարարությամբ, գերմանական ժողովրդին տրամադրում է մեծ քանակությամբ մթերքներ: Գերմանական աշխատավոր ժողովուրդը համոզվում է, որ հանձին սովետական բանակի, Գերմանիա է մտել իսկապես ազատագրական միսիա ունեցող բանակ:

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, սովետական կառավարությունը բարձր են գնահատել մեծ զորավարի ծառայությունները սովետական պետության հանդեպ: Նա Սովետական Միության քառակի հերոս է, պարգևատրվել է բազմաթիվ շքանշաններով:

1974 թվականի սեպտեմբերին դադարեց բաբախելուց մեծ զորավարի սիրտը: Նրա աճյունասափորն ամփոփվեց Կրեմլի պատի մեջ:

Գեորգի Կոնստանտինովիչ Ժուկովի Հուշեր և մտորումներ գիրքը բացառիկ է իր տեսակի մեջ: Անչափ մեծ է ընդգրկված պրոբլեմների շրջանակը: Բարձր է գրքի դաստիարակչական, ուսուցողական արժեքը: Այն գալիք սերունդներին կըպատմի, թե ինչպես են ապրել, կռվել սովետական մարդիկ մեծ Հայրենականի ահեղ մարտերում:

Հ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆ

## Սովետական մարդու հպարտությունը

# ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆԸ

Երեսունչորս տարի է անցել այն օրից, ինչ հայրս մեկնեց ռազմաճակատ ու չվերադարձավ: Այն ժամանակ ես երկու ամսական էի: Շատերի նման բախտը չի ժպտացել ինձ: Ես չհասցրի արտասանել հայր բառը, զգալ հոր փաղաքշանքները, ստանալ նրա դաստիարակությունը: Հորս մասին լսել եմ մորիցս, ուրիշներից և նրա նամակներից, որ մայրս պահում էր աչքի լույսի պես: Մայրս միշտ ապրել է հույսով, թե ուր որ է կգա ու իր թոռնիկներին պապիկ կդառնա. նա հավատում էր հորս վերադարձին:

Բայց ահա փարատվեցին մեր ապրումները, երբ «Լենինյան ուղիով» ամսագրում ընթերցեցինք ՎՐԻԺԱՌՈՒՆԵՐԻ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ՊԱՐՏՔԸ հոդվածը (1973, № 5): Կարդալով Աշոտ Դավթի Հովհաննիսյան անուն-ազգանունը և տողատակի ծանոթագրությունում նրա ծննդյան թիվն ու տեղը, ուրախության արցունքներով թրջվեցին մեր աչքերը: Հորս անուն-ազգանունը... Այո, ուրախության, որովհետև ինձ բախտ վիճակվեց հորս անունն ընթերցել հերոսաբար զոհվածների շարքում: Միրտս ասում էր, որ մի որևիցե տեղ կընթերցեմ հորս սխրագործությունների մասին... Պատմածներն ինձ համոզում էին, որ այդպիսի մարդը անհայտ չի կորչի: Այժմ այս բոլորն ինձ երազ է թվում:

Մի երկու խոսք էլ մորս անունից:

Շնորհակալ է ձեզանից, որ վերջ տվիք անորոշ սպասումներին: Այժմ նա մխիթարված է զգում, որ իր ամուսնու անունն էլ հերոսաբար զոհվածների շարքումն է: Խնդրում է ներեք ձեզ անհանգստացնելու համար:

Եթե կան ուրիշ մանրամասնություններ Աշոտ Դավթի Հովհաննիսյանի մասին, ուղարկեք ինձ, իսկ եթե ոչ՝ պատասխանեք, թե որտեղի՞ց կարելի է իմանալ:

Հարգանքներով՝ Գ. ՕՀԱՆՅԱՆ

22 ապրիլի 1975 թ.
ք. Բաքու

ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ.— Հարգելի ընկ. Օհանյան. Ձեր այս նամակն ստանալուն պես կապվեցինք հոդվածագիր Մ. Սահակյանի հետ և խնդրեցինք, որպեսզի նա Ձեզ հանգամանորեն գրի, թե ինչ գիտե Ձեր հոր մասին: Ցավոք, նա մեզ պատասխանեց, թե գրածից բացի, այլ տեղեկություն չունի: Սակայն նա շարունակում է իր որոնումները և եթե հետագայում որևէ նոր բան հայտնաբերի Ա. Դ. Հովհաննիսյանի վերաբերյալ, այդ մասին Ձեզ տեղյակ կպահի:



Адрес редакции: 375033, Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

ՎՖ 03744 Պատվեր 770 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 14.300 Գինը 20 կ.:

Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 21/V 1975

ՀԿԿ Կենտկոմի Հրատարակչության տպարան, Ալ. Խաչհակյան փող. № 28:

